# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 11. 89




*Հանձնված է արտադրության 28.08.89 թ.: Ստորագրված է տպագրության 10.11.89 թ.: ՎՖ 11425: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61032: Պատվեր՝ 1085: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 28.08.89 г. Подписано к печати 10.11.89 г. Формат 70×100 1/16. ВФ 11425. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61032. Заказ 1085. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ գործ ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ


— Ա՛յբ, բե՛ն, գի՛մ,
Ե՛լ, Հովակիմ...

Ու եղա՛վ: Եղա՛ն: Հայոց երեսունմեկ ֆիդայիներ ոտքի ելան իրենց Մեծ Զորավարի՝ Մեսրոպ Մաշտոցի հրամանով: Ոտքի ելան, և ի լուր աշխարհի՝ ղողանջեցին զանգերը սրբոց տաճարների, վառվեցին հուսո խարույկներ արծվաբույն լեռներում, և Հայոց երկնքից, հայ Աստծո փեշերից թափվեցին քաղցրահամ մանանայի նշխարներ...

Հետո արծվաբույն այդ լեռները ելան ժողովրդական վրիժառուները՝ Արաբոն, Աղբյուր Սերոբը, Գևորգ Չաուշը, Անդրանիկը...

Եղա՛ն ու ֆիդայական երդում տվեցին. «Այսուհետև իմ բարձր Հայաստանի լեռները կլինեն և իմ ամենամեծ բաղձանքը՝ Հայրենիքի համար մեռնելը: Բարո՛վ արժանանամ հերեղեն գնդակի համբույրին»:

Եղա՛ն, որպեսզի իրենցով հաստատեն այն պարզ ճշմարտությունը, որ հայրենիքի վտանգի պահին իրենցից յուրաքանչյուրը պատրաստ է կյանքը դնելու հայրենյաց փրկության զոհասեղանին:

Ու եղա՛ն: Եղա՛ն ու շատացա՛ն: Երեսունմեկն էին՝ դարձան հարյուր, դարձան հազար, դարձան բյո՛ւր: Դարձան հնագույն մի ժողովրդի հավերժության կենսագիրներ, նրա հերոսական պատմության կերտողներ ու պաշտպաններ: Եվ պատմության այդ խորքերից իր խոժոռադեմ հայացքով առյուծաբաշ ճերմակին հեծած դեպի լինելության մեր այսօրվա միակ հանգրվանը եկավ Զորավար Անդրանիկը: Եկավ անզորավար զորքի գլուխն անցնելու, զինավառելու, ոգևորելու և նաև ղեկավարելու ֆիդայական մեր արդար պայքարը:

Եվ օդում կայծակներ թրատեց նրա Թուր-Կեծակին, ծառս եղավ Ճերմակն ու իր ամեհի վրնջոցով ահ ու սարսափ տարածեց թշնամու վրա. թե՝ գիտցե՛ք, ես ապրո՛ւմ եմ, ես դեռ չե՛մ մեռել: Եվ ի պատասխան նրա մռնչոցին՝ մի ո՛ղջ ժողովուրդ ձեռքերը բռունցք արած՝ դեպի Հայոց Աստծուն պարզեցին իրենց բողոքը, իրենց մռունչն ու հատուցման անբեկանելի իրենց վճիռը...

Առաջինը Անդրանիկին «դիմավորեցին» արդեն Զորավարի անունը կրող Երևանի № 191 դպրոցի աշակերտները: «Դիմավորեցին» և «ողեկցեցին» իրենց դպրոցի նորաբաց այն թանգարանը, որի



Լուսանկարները՝ ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ

# ԵՎ ԴՊՐՈՑ ՄԸ ԱՆԴՐԱՆԻԿ ԱՆՈՒՆՈՎ...

ամեն մի մասունք թանկ ու հարազատ էր Զորավարին: Թանգարանի լուսանկարների և ցուցանմուշների վահանակներում, փայտաշեն պահարանում և լուսավոր սենյակներում նշխար առ նշխար հավաքվել, պահվում են ոչ միայն Անդրանիկի հերոսական կյանքն արտացոլող հազվագյուտ լուսանկարները, մերձավորներին ու բարեկամներին ուղղված ձեռագիր նամակները, Զորավարի զինակից ընկերների խմբակային լուսանկարներն ու պատմական արխիվային նյութերը, այլև մեր անցյալ ու ներկա հերոսական պայքարի մաքառումները դրըվագող կտավները, ֆիդայիների քաջագործություններն արձանագրող վկայագրերն ու արժեքավոր փաստաթղթերը:

Իսկ թանգարանի զարդը Մեծ Զորա-



վարի օգտագործած այն թուրն է, որի մի հարվածով ժողովրդի սիրելի գրող Սերո Խանզադյանը կտրեց ժապավենը՝ ազդարարելով թանգարանի բացումը: Կանցնեն տարիներ, և գրողի Անդրանիկ թոռը, որն այսօր դեռ հինգ տարեկան է, սիրով ու ջերմությամբ կհիշի պատմական այդ պահը, երբ պապիկի ձեռքից բռնած առաջինը ինքը ոտք դրեց դըպրոցի այդ սրբոց անկյունը:

Թանգարանի ցուցասրահներում տեղ են գտել նաև Անդրանիկի կյանքն ու ազգային-ազատագրական պայքարն արտացոլող հազվագյուտ լուսանկարներ, նամակներ, զեկուցագրեր ու ձեռագրերի լուսապատճեններ: Հատկապես ուշագրավ է այն ցուցավահանակը, որտեղ պահվում են վկայականը՝ Անդրանիկի ստորագրությամբ, նրա զինակից Սմբատ զորավարի դրամապանակն այցետոմսերով, կրակահանը, դաշտային հեռադիտակը, ծխամորճը և այլ արժեքավոր իրեր, որոնք դպրոցին է նվիրել Հայաստանի պատմության թանգարանը: Իսկ Տավրոս Դաշտենցի նվերը՝ թանգարանի բացման օրը, աշակերտները երբեք չեն մոռանա: Նա թանգարանին նվիրեց հորը՝ Խաչիկ Դաշտենցին ուղղված Անդրանիկի կնոջ՝ Նվարդ Օզանյանի նամակի լուսապատճենը, որը պատմում է Զորավարի կյանքի վերջին տարիների մասին:

Որպեսզի կարողանան ցրել Զորավարի դեմքի տարիների թախիծը, աշակերտներն այնուհետև իրենց մեծ հայրենակցին «ուղեկցեցին» քաղաքի Հարավ-արևմտյան այն թաղամասը, որը ժողովուրդը ցանկանում է անվանակոչել Անդրանիկի անունով, նաև այն շրջանաձև հըրապարակը, ուր հավանաբար կտեղադըրվի Զորավարի արձանը:

Օրը երեկոյանում էր: Զորավարի անունը կրող դպրոցի աշակերտները հրաժեշտ տվեցին Անդրանիկին ճամփաբաժանում: Զորավարը մեկիկ-մեկիկ համբուրեց վաղվա իր հույս-ծաղիկներին, ելավ, հեծավ իր ճերմակ ձին և պատյանից հանելով առասպելական Թուր-Կեծակին, կրկին բռնեց դեպի Անմահություն տանող ճանապարհը: Հեռվից լսելի էին դպրոցի «Անդրանիկ» ազգագրական երգչախմբի սաների կատարմամբ հնչող ծանոթ երգի սրտամոտ տողերը.

Արդյոք ովքե՞ր են, ի՞նչ կտրիճներ են,
Մասիսը վկա՝ հայո՛ց քաջերն են...

ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆ

ԲԱԳՐԱՏ ԱԼԵՔՅԱՆ

## Գիրքը

Գիրքը ունի միայն մի դուռ,
Հազար ու մի պատուհան,
Հազար աչքով բացվող մաքուր
Հազար հարց ու պատասխան:

Գիրքը ոսկե ձուկ է մտքի,
Ամեն գույնի երազանք,
Ով այս դռնով մի օր մտնի,
Կգտնի գանձ անքանակ:

Գիրքը շող է, որ չի հատնի,
Հազար շողով հյուսված երգ,
Գիրքը մի օր քեզ կգտնի,
Կհաշտեցնի կյանքի հետ:

ՆՈՐԱՅՐ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

## Կորիզի ճամփորդությունը

Կորիզը պահ տվի հողում,
Տաք անձրևը ողողեց.
Ջերմ արևն էր երկնում շողում,
Շարժվեց կորիզն ու ծլեց:

Ծիլը եղավ ու դարձավ շյուղ,
Շյուղն էլ աճեց-դարձավ ծառ,
Ամուր ծառ էր, չուներ երկյուղ,
Որքան փչեր քամին չար:

Ծառը ծաղկեց, պտղավորվեց,
Խնձոր տվեց ոսկեգույն,
Խնձորը իմ պապը կիսեց,
Մեջը կորիզն էր այն նույն:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ԳԵՎՈՐԳ ԷՄԻՆ

## Վագրաձին

(շերտավոր ձին)

Սա դեռ նո՞ր է քնից զարթնել,
Թե՞ դեռ նո՞ր է ուզում քնել,
Պիժամա՞ է հագել արդեն,
կամ՝ ուզում է հագից հանե՞լ:

## Ճագարը

Երբ նստած է վանդակ— ցանցում,
Ականջները միշտ կախ գցում,
Մի կանաչ խոտ բերանն առնում՝
Ճարպի անշարժ գու՞նդ է դառնում:
Իսկ երբ բա՞ց են թողնում այգում,
Ականջները վերև տնկում,
Ծյուղ ու թփի լարին քսու՞մ
Ու թա՞փ առնում
Տրոլեյբու՞ս է ասես դառնում:



## Ոզնին

(անգլիական)

—Ոզնի՛, ինչու՞ ես փշապատ,
—Ուրիշ ինչպե՞ս լինեմ հապա,
Գիտե՞ս, ո՞վ են դրկիցներս՝
Ճերմակ արջն ու գորշ գայլե՞րը...

## Կատու անունով շունը

Հենց որ բակից տուն է վազում,
Աստղիկը միշտ նույնն է ասում.
«Պապիկ, արի կատու առնենք,
Արի մե՛նք էլ կատու պահենք...»:

«Չէ՞,— ասում է պապն Աստղիկին,
Կճանկռոտի նա բալիկին,
Դունչը ճաշի մեջ կխոթի,
Տունը մազով կկեղտոտի,
քո անկողնու մեջ կքնի,—
Լավ է պահենք մի լա՞վ շնիկ.
—Ծիշտ չե՞մ ասում, ասա՛, Աստղե՛տ...
Կատուն ի՞նչ է, ո՛ւմ է նա պետք,
մի շու՞ն բերենք, որ նազ չանի,
այլ հաչի ու տունը պահի...
—Չէ՛, կատո՞ւ եմ ուզում, կատո՞ւ,
որ շուն առնեք՝ էլ չե՞մ գա տուն,
միշտ Գևորգենց տուն կգնամ,
որ կատվի հետ այնտեղ խաղամ...

Տեսանք, որ բան դուրս չի՞ գալիս,
Շունն Աստղիկին դուր չի՞ գալիս,
Տնով-տեղով հավաքվեցինք
և Աստղիկին համոզեցինք,
Թե տան համար կառնենք շնիկ,
իսկ Աստղիկին՝ մի մե՞ծ տիկնիկ...

Աստղիկը թե. «դե լա՞վ, առե՛ք,
Բայց ինձ կատվի մոտ էլ տարեք...»
— Իսկ ի՞նչ անուն դնենք շանը,—
Ասաց պապիկն իր թոռանը.

Եվ Աստղիկը լացակումած,
Պատասխանեց՝ դեռ խռովա՞ծ,

— Որ չե՞ք ուզում կատու գա տուն,
շան անունը դնենք ...կատու՛:

## Ջայլամը

Սա ջայլա՛մ է Ավստրալիայի.
Ասում է՝
«Ես չկա՜մ, նայիր...»:
Փոքրիկ գլուխն
Ավազի մեջ խո՛րը թաղում,
կարծում է, թե
Ինքը չկա՛, չի՛ երևում...

## Մի ուրիշ ջայլամ

(ըստ Զախոդերի)

Ոչ երգում է,
Ոչ էլ՝ թռչում,—
Էլ ինչու՞ է
Կոչվում ... թռչուն:

Նկարները՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ





## Ձին

Ով չգիտի, թե ի՛նչ է ձին,
թող գա, պատմե՛մ բերանացի.—
Ձին սարքում են ամուր փայտից,
ռետինից ու հաստ-հաստ թղթից,
Հետո՝ ներկում գույնով պես-պես,—
Չե՞ս հավատում՝
քանդի՛ր ու տե՛ս:
Իմ ձին ունի երկու ականջ,
Մեկը երկար, մյուսը՝ կարճ,
Մի պո՛չ ունի և... չորս անիվ,
Առանց անիվ խեղճն ի՛նչ անի,—
Ինչպե՜ս շարժվի կանգնած տեղից,
Եթե քաշե՛ս սանձ ու թելից...

Գևորգ պապիկն ասում է, թե
Երբ փոքրի՛կ է ինքը եղել
Եվ վազվզել
Աշտարակի սար ու ձորով,
Իրենք մի ձի՛ են ունեցել,
որ շարժվել է ... չորս ոտքերո՛վ,
Ջո՛ւր է խմել, գարի՛ կերել,
Եվ պապիկին տարե՛լ — բերե՛լ...
Ե՛ս էլ եմ այդ ձիուն տեսել
Եվ այդ հրա՛շք ձիուն նստել,
Բայց չե՛մ հիշում՝ պապոնց գյուղու՞մ,
Թե՞ կրկեսում կամ կինոյում...

## ԱԿՈՒՏԱԳԱՎԱ

# ՄՈՄՈՏԱՐՈ

Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ

Հին-հին ժամանակներում, խուլ թավուտում մի վիթխարի դեղձենի էր աճում։ Այսինքն՝ միայն «վիթխարի» ասելը քիչ է։ Դեղձենու ճյուղերը տարածվում էին ամպերից վեր, արմատները ձգվում էին մինչև հողի խորախոր ընդերքում գտնըվող Խավարի երկիրը։ Ավանդությունն ասում է, թե դեռևս աշխարհի արարման ժամանակ Իձանագի աստվածը, որպեսզի իրենից վանի Խավարի երկրի և Ողջերի աշխարհի միջև ընկած հարթության ութ ամպրոպները, նրանց վրա դեղձ է շպրտել և ահա աստվածների վեկի[1] այդ դեղձից բուսել է վիթխարի դեղձենին։

Այն ժամանակից, ինչ գոյություն ունի տիեզերքը, այդ ծառը ծաղկում է տասը հազար տարին մեկ և տասը հազար տարին մեկ անգամ պտուղ է տալիս։

Նրա ծաղիկները նման են ոսկյա ծոպերով մեծ հովանոցների։ Իսկ պտուղները... ինչ խոսք, պտուղներն էլ են վիթխարի։ Բայց ամենազարմանալին այն է, որ յուրաքանչյուր պտուղ, կորիզի փոխարեն, իր մեջ կրում է մի մանկիկ։

Հին-հին ժամանակներում դեղձենին պտուղներով ծանրաբեռնված, ճյուղերը տարածելով լեռների ու հովիտների վրա, լողանում էր արեգակի շողերի մեջ։ Տասը հազար տարին մեկ անգամ աշխարհ եկող պտուղները հասունանում էին հազար տարվա ընթացքում և վայր չէին ընկնում։ Բայց մի խաղաղ առավոտ ճակատագիրը՝ սրբազան ագռավի կերպարանքով, թառեց ծառի ճյուղերից մեկին։ Ագռավն սկսեց կտցահարել ամենափոքրիկ դեղձը, որ նոր-նոր կարմրում էր, և գցեց ցած։ Դեղձը թռավ խիտ ամպերի միջով, ընկավ հեռու, լեռնային գետի մեջ։ Գետը սպիտակ ցայտքեր շաղ տալով ժայռերի միջով հոսում էր, անշուշտ, դեպի մարդկանց երկիր։

Թե ինչպես մանկիկով դեղձը, հեռանալով խոր թավուտից, ընկավ մարդկանց երկիր, թերևս չարժե մանրամասն պատմել։ Այդ բանը հայտնի է ամեն մի ճապոնացի դպրոցականի. պառավը լեռնային գետում պարզաջրում էր անտառը փայտի գնացած իր ծերուկի շապիկը...

Դեղձից ծնված Մոմոտարոն որոշել էր նվաճել Օնիգասիման՝ սատանաների կղզին։ Ինչո՞ւ էր այդ բանը մտածել։ Որովհետև չէր ուզում ծերուկի ու պառավի նման աշխատել անտառում, գետում ու դաշտում։

Ծերուկն ու պառավը շատ էին ձանձրացել այդ չար ու կռվարար տղայից և նրանից օր առաջ ազատվելու համար անմիջապես ճամփի պատրաստություն տեսան։ Նրան տվեցին դրոշակ, թուր, դաշտային թիկնոց։ Ավելին, Մոմոտարոյի պահանջով թխեցին կորեկի բլիթներ։

Այսպես Մոմոտարոն հաղթական տեսքով արշավի գնաց դեպի Օնիգասիմա։ Ճանապարհին հանդիպեց հսկա մի գամփռի։ Սա պսպղացնելով քաղցած աչքերը, այսպես խոսեց.

— Մոմոտարո-սան, Մոմոտարո-սան, այդ ի՞նչ է կախված քո գոտուց։

— Կորեկի բլիթներ են, Ճապոնիայի լավագույն բլիթները,— հպարտ պատասխանեց Մոմոտարոն, թեև, ճիշտն ասած, այնքան էլ համոզված չէր, թե դրանք Ճապոնիայի լավագույն բլիթներն են, բայց գամփռը կորեկի անուն լսեց, թե չէ, անմիջապես մոտ վազեց։

— Մի բլիթ տուր՝ հետդ գամ։

Մոմոտարոն մտքում հաշիվ արեց։

— Չէ, մի լրիվ բլիթ չեմ տա։ Կեսը կտամ։

Գամփռը վնգստաց. «Լրիվը տուր»։ Մոմոտարոն չզիջեց. «Կեսը կտամ»։ Էհ, ինչքան էլ սակարկես, միևնույն է, եթե ոչինչ չունես, ակամա ենթարկվում ես նրան, ով ինչ-որ բան ունի։ Այդպես էլ շունը։ Թառանչելով գնաց Մոմոտարոյի հետ։

Կորեկի կեսական բլիթով Մոմոտարոն ծառայության ընդունեց նաև կապիկին ու փասիանին։ Բայց, դժբախտաբար, Մո-

1. *Ըստ ճապոնական առասպելների՝ Ճապոնիան իր պատմությունն սկսում է այսպես կոչված «Աստվածների վեկերից», որոնք, իբր, ճապոնական թագավորների նախնիներն են։*



մոտարոյի ծառաները իրար հետ հաշտ չէին: Գամփռն իր ուժեղ ժանիքներով միշտ շփոթեցնում էր անօգնական կապիկին: Կապիկը միշտ շփոթեցնում էր պարզամիտ փասիանին: Փասիանը, որ բավական գաղափար ուներ երկրաշարժաբանությունից և այլ գիտություններից, միշտ շփոթեցնում էր հիմար գամփռին: Եվ նրանց վեճերը ոչ մի վայրկյան չէին դադարում, այնպես որ Մոմոտարոն ծառայության ընդունելով գամփռին, կապիկին, փասիանին, համենայն նրանց այնքան էլ հուսալի օգնականներ չունեցավ:

Կապիկը ստամոքսում դատարկություն զգալով՝ հանկարծ ապստամբեց: Նա հայտարարեց, որ իր կարծիքով չարժե կես բլիթի համար մասնակցել Օնիգասիմայի արշավանքին: Գամփռը հաչոցով հարձակվեց կապիկի վրա, որ կծի, բայց փասիանը մի կերպ հանգստացրեց նրան, իսկ կապիկին աշխատեց սովորեցնել տիրոջը հավատարիմ մնալու սկզբունքները և հորդորեց ենթարկվել Մոմոտարոյին: Բայց կապիկը խույս տալով գամփռի ժանիքներից, բանի տեղ չդրեց փասիանի խրատները և ցատկեց ճամփեզրի ծառի վրա:

Եվ միայն Մոմոտարոյի ճարպկության շնորհիվ, ի վերջո, հնարավոր եղավ համոզել կապիկին: Հայացքը գցելով կապիկին և շարժելով հովհարը, որի վրա պատկերված էր ծագող արեգակ, նա հանգիստ ասաց.

— Չես ուզում՝ մի գա: Բայց երբ Օնիգասիման նվաճված լինի, դու կզրկվես քո բաժին գանձից:

Ագահ կապիկը չռեց աչքերը.

— Գա՞նձ: Մի՞թե Օնիգասիմայում գանձ կա:

— Այն էլ ինչպիսի: Այնտեղ կա հոյակապ մի գանձ՝ բախտի մուրճիկը: Բավական է թխկացնես այդ մուրճիկով, անմիջապես կունենաս ինչ որ ցանկանաս:

— Ուրեմն այդ մուրճիկով կարելի է ձեռք բերել նույնպիսի ուրիշ մուրճիկներ և մեզանից յուրաքանչյուրը կունենա ինչ որ ցանկանա: Լավ է: Խնդրում եմ, ինձ էլ տարեք ձեզ հետ:

Մոմոտարոն գամփռի, կապիկի և փասիանի ուղեկցությամբ նորից ճանապարհ ընկավ՝ օր առաջ նվաճելու Օնիգասիման:

Օնիգասիման ծովի հեռաստաններում կորած կղզի է: Բայց կղզում միայն լերկ ժայռեր չէին, ինչպես կարծում էին մարդիկ: Իրականում կղզին մի զմայլելի, դը-

րախտային անկյուն էր: Այստեղ աճում էին կոկոսյան արմավենիներ, և դայլայլում էին զմրուխտ հավքեր: Այսպիսի դրախտում ծնված սատանաները, բնականաբար, ամենից ավելի սիրում էին խաղաղ կյանքը: Այսինքն՝ Սատանա կոչվածը ցեղ էր, որին բաժին էր ընկել ավելի ուրախ կյանք, քան մարդկանց:

Տրոպիկական հուրթի բուսականության մեջ սատանաները կոտր էին նվագում և պարում, կարդում էին հնադարյան բանաստեղծներին, ապրում էին հաշտ ու խաղաղ: Նրանց կանայք ու աղջիկները կոտր էին գործում, սակե էին եփում, պսակներ հյուսում, մի խոսքով՝ ապրում էին այնպես, ինչպես մեր կանայք ու աղջիկները: Իսկ ալեհեր ու անատամ պառավները թոռնիկ էին պահում և պատմում, թե որքան սարսափելի են մարդիկ՝ մենք:

— Եթե չարություն անեք, ձեզ կուղարկենք Մարդկանց կղզին, իսկ երբ սատանաներն ընկնում են Մարդկանց կղզին, նրանց բոլորին սպանում են, ինչպես հին-հին ժամանակներում սպանել են Սյուտեն-Դոձին: Ինչպե՞ս թե, ովքեր են մարդիկ: Մարդիկ սարսափելի արարածներ են, առանց կոտոշների, ըսպիտակ ձեռք ու ոտքով: Նրանց կանայք իրենց դեմքին, ձեռք ու ոտքին ըսպիտակ շպար են քսում: Սա արդեն ամեն ինչ ասում է նրանց մասին: Մարդկանց կղզու տղամարդիկ ու կանայք ստախոս են, ագահ, խանդոտ, ինքնահավան, սպանում են իրենց ընկերներին ու համախոհներին, հրդեհ են գցում, կողոպուտ անում և անհուսորեն տգետ են...

Մոմոտարոն այնպիսի ահուսարսափ գցեց անմեղ սատանաների սիրտը, որպիսին նրանք չէին ապրել իրենց պետության հիմնադրման օրից: «Մա՜րդը, մա՜րդը» ճչալով՝ սատանաները ցիրուցան եղան:

— Առա՛ջ, առա՛ջ: Մեկ առ մեկ կոտորենք բոլոր սատանաներին:

Այդ Մոմոտարոն էր հրամայում իր ծառաներին՝ գամփռին, կապիկին և փասիանին, ծածանելով դեղձի նշանով դրոշակը և ծագող արևգակի պատկերով հովհարը: Գամփռը, կապիկը և փասիանը, ինչպես գիտենք, օրինակելի ծառաներ չէին: Բայց թերևս աշխարհում չըկան ավելի խիզախ զինվորներ, քան քաղցած անասունները: Նրանք մրրիկի նման սուրացին փախչող սատանաների ետևից: Գամփռն ուժեղ ժանիքներով կըծում էր ջահել սատանաներին: Փասիանը սուր կտուցով սպանում էր սատանաների ձագերին: Կապիկը, դեհ, նա ազգակից է մարդուն, պատանի սատանաներին խեղդամահ անելուց առաջ չարչարում էր...

Երբ արդեն բոլոր հնարավոր և անհնարին հանցագործությունները կատարված էին, կենդանի մնացած առաջնորդը և մի քանի սատանաներ հանձնվեցին Մոմոտարոյի գթասրտությանը: Բայց կարո՞ղ էր իրական հաղթանակ տոնել Մոմոտարոն: Օնիգասիման այլևս դրախտ չէր. լռել էին զմրուխտ հավքերը: Կոկոսի պուրակը ծածկված էր սատանաների դիակներով: Մոմոտարոն իր երեք ծառաների ուղեկցությամբ, դրոշը ծածանելով ընդառաջ գնաց բերանքսիվայր ընկած սատանաների առաջնորդին և հայտարարեց.

— Կարեկցանքի զգացումից մղված, ես կյանք եմ պարգևում ձեզ: Բայց փոխարենը պետք է ինձ մատուցեք Օնիգասիմայի գանձերը: Բոլորը: Անմնացորդ:

— Համաձայն ենք, կմատուցենք...

— Բացի այդ, պետք է պատանդ տաք ձեր երեխաներին:

— Խոստանում ենք, այդ էլ կկատարենք:

Սատանաների առաջնորդը նորից քիթը հպեց գետնին, ապա երկյուղած դիմեց Մոմոտարոյին:

— Մենք հասկանում ենք, որ պատըժված ենք ձեզ հասցրած ինչ-որ վիրավորանքի համար: Բայց երդվում եմ, որ ո՛չ ես, ոչ էլ Օնիգասիմայում բնակվող մյուս սատանաները գաղափար անգամ չունենք, թե ի՞նչ վիրավորանք ենք հասցրել ձեզ: Արդյոք չէի՞ք կամենա բացատրել, թե ի՞նչ ենք արել ձեզ:

Մոմոտարոն անվրդով գլխով արեց:

— Ճապոնացիներից լավագույնը՝ Մոմոտարոն, վարձել է երեք հավատարիմ ծառաների՝ գամփռին, կապիկին և փասիանին, եկել է նվաճելու Օնիգասիման:

— Պարզ է, բայց ինչի՞ համար:

— Ես վաղուց էի մտադրվել նվաճել Օնիգասիման, դրա համար էլ կորեկի բըլիթներով ծառաներ վարձեցի: Պա՞րզ է: Բայց եթե հիմա էլ ասես, թե չես հասկանում, բոլորիդ կկոտորեմ:

Սատանաների առաջնորդը վախեցած



Նկարները՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ետ-ետ գնաց և խոնարհվեց:

Ծապոնացիներից լավագույնը՝ Մոմոտարոն, և նրա ծառաները՝ գամփռը, կապիկը և փասիանը, պատանդ վերցրած սատանաների ձագերին լծեցին սայլին, որը բեռնված էր Օնիգասիմայի գանձերով, և հաղթանակով վերադարձան հայրենիք... Այս բանը հայտնի է ճապոնացի յուրաքանչյուր դպրոցականի:

Այսուամենայնիվ Մոմոտարոն երջանիկ չէր:

Սատանայի ձագերը համարձակություն առնելով, սպանեցին իրենց հսկող փասիանին և ետ փախան Օնիգասիմա: Ավելին, կղզում ողջ մնացած սատանաները ժամանակ առ ժամանակ ծովով անցնում էին Մարդկանց երկիր, մեկ մահափորձ էին կատարում քնած Մոմոտարոյի դեմ, մեկ հրդեհում էին նրա պալատը: Ասում են, իբր կապիկին սպանել էին սխալմամբ: Եվ Մոմոտարոն, երբ գլխին էր թափվում հերթական դժբախտությունը, սոսկ ծանր հոգոց էր հանում:

— Ես շատ եմ տուժում այս սատանաների վրեժխնդրությունից:

— Ինկապես, որ սրիկա են, ինչպես են մոռանում իրենց կյանքը պարգևած մարդու բարությունը,— ողբում էր շունը՝ կարեկցանքով նայելով Մոմոտարոյի վշտոտ դեմքին:

Իսկ այդ ժամանակ Օնիգասիմայի ափերին երիտասարդ սատանաները տրոպիկական լուսնի սքանչելի լույսի տակ ռումբեր էին պատրաստում կոկոսներից, որպեսզի նվաճեն իրենց կղզու անկախությունը: Նրանք նույնիսկ մոռացության էին տվել իրենց սերը չքնաղ կախարդուհիների նկատմամբ և լուռ աշխատում էին, մռայլ շողացնելով հսկայական, ափսեաչափ աչքերը...

Մարդկանցից հեռու, լեռների խուլ թավուտում, մինչև օրս աճում է ամպերից վեր խոյացող վիթխարի դեղձենին՝ պտուղներով ծանրաբեռ: Ինչպես հայտնի է, լեռնային գետի մեջ էր ընկել և գետը ն ի վար քշվել միայն մի դեղձ, այն, որի մեջ գտնվում էր Մոմոտարոն: Բայց ծառին հասունացող պտուղների մեջ դեռ քնած են ապագա անհամար հերոսներ: Ե՞րբ է դեղձենու ճյուղին նորից թառելու վիթխարի, սրբազան ագռավը:

Այո, ծառին հասունացող պտուղների մեջ քնած են ապագա անհամար հերոսներ...



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Աբուլ

Ես ծնվել եմ քո գրկում,
Իմ քաջ Աբուլ անվեհեր,
Ու մեծացել քո գրկում,
Ինչպես արծիվ լեռներում,
Ահա կանգնել քո լանջին,
Նայում ծմռան աշխարհին,
Քուն է մտել աշխարհը,
Արթուն է լոկ լեռն իմ հին։

## Հայաստան

Գույնդ՝ կարմիր,
Երեսդ՝ վառ,
Գլխիդ՝ արև մի բոցավառ։
Կորցրիր ամեն զավակներիդ՝
Քո անկեղծ լույս ընկերներիդ։
Կգա ժամը, ու կփայլի
Անունդ. ինչպես քո սեգ Սարը։

●●●

Կապույտ երկնքի տակ
Իմ մտքերը միայնակ.
Մտածում եմ ու խորհում
Լեռան կապույտ ստվերում։
Ու կանգնած եմ ես ահա
Հայրենի հողի վրա,
Մտածում եմ ու տխրում,
Լալիս, խնդում ու հուզվում։
Սիրում են իմ մտքերը
Հայրենի հեռուները.—
Նա է միայն անմահը՝
Հայրենիքի սահմանը։

●●●

Հայաստանի լեռները տխուր են,
Կարծես լալիս են միաձայն,
Ու գլուխները կախել են,
Մտածում են մտածում,
Ինչու՛, ախ հա,
Թուրքն է անցել նրանց վրայով
Ու հետքերն է իր թողել՝
Սև ու թունավոր։

●●●

Վեհափառ Անի,
Ուզում եմ մոտդ գալ
Կապույտի միջից երկնի։
Քեզ տարել է մահվան վտակը,
Ընկել ես ծովի հատակը,
Մեզ պիտի հանձնես մահվան կտա՛կը...
Ուզում եմ միասին լինենք,
Միասին հավերժ ապրենք։

●●●

Ահա մեր հսկա Մասիս սարը,
Ալեհեր է նա,— փոխվել է դարը,
Հայաստան են գլորվում նրա արցունքները։
Հոնքերն է կիտել ու կանգնել մոլոր,
Թե ինչ իրեն կասի Հայոց աշխարհն
այսօր...

ՄԱՍԻՍ ՂՈՒՅՈՒՄՉՅԱՆ
Վրաց. ԽՍՀ, Բոգդանովկայի շրջան, գյուղ Փոկա, միջն. դպրոց, 8-րդ դաս.



ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ

բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# Պապը Մեծ Հայքի թագավոր

Պապ Արշակունու վարքի մասին Փավստոսն էլ, Խորենացին էլ վատ են գրել, որ իբր նա շատ անառակ կյանք է վարելիս եղել: Դրա պատճառը երևի այն էր, որ Պապը հայոց եկեղեցու իրավունքները սահմանափակեց, իսկ Փավստոսն ու Խորենացին հոգևորականներ էին, հայոց եկեղեցու պաշտպաններ: Մինչդեռ հույն (լատինագիր) պատմիչ Ամիանոս Մարկելինոսը Պապին բնութագրում է որպես դրական անձնավորություն: Նա հայոց այս թագավորին ներկայացնում է իբրև օրինապահ, համեստ մարդու, որ իր ազնվության ու միամտության պատճառով հույների դավադրության զոհ է դարձել:

Պապը թագավորեց մոտ 5 տարի՝ 369—374 թվականներին, և այդ կարճ ժամանակվա ընթացքում կարողացավ վերականգնել Մեծ Հայքի միասնությունն ու անկախությունը:

Քանի որ նա եղել էր Հռոմի բյուզանդական արքունիքում, ծանոթ էր նրանց խորամանկ քաղաքականությանը, գիտեր, որ Հռոմը հայերին կարող էր օգնել միայն այն դեպքում, եթե դրանում շահ ունենար: Պապը չէր հավատում այն տեսակետին, ըստ որի՝ եթե Հայաստանը ու Հռոմը քրիստոնյա պետություններ են, ուրեմն Հռոմը հայերի բարեկամն է: Պապը թեև երիտասարդ էր, բայց հասկանում էր, որ քաղաքականության հարցում միևնույն կրոնը դավանելը նշանակություն չունի, որ ամեն պետություն իր շահն ունի, և հայերի գեղեցիկ աչքերի համար ոչ ոք նրանց չի օգնել և չի օգնի:

Հռոմի (Բյուզանդիայի) Վաղես կայսրը չեղյալ հայտարարեց Հովիանոսի կնքած պայմանագիրը և իր զորքերը մտցրեց Շապուհի գրաված մի շարք երկրներ: Նա զորք ուղարկեց նաև Հայաստան ու Վրաստան: Այս վերջինում գահընկեց արեց Շապուհի կարգած թագավորին և նրկին գահ բարձրացրեց իր մարդուն: Զորաբանակ թողեց նաև Հայաստանում, հայերին պարսիկների դեմ օգնելու նպատակով: Պապի համար պարզ էր, որ Վաղեսը Հայաստանին ու Վրաստանին օգնում է ընդդեմ Պարսկաստանի զուտ Հռոմի շահերը նկատի առնելով:

Սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը մեծ զորաբանակ կազմելով նախ պատերազմեց Հայաստանում գտնվող Զիկ և Կարեն զորավարների պարսկական զորքերի դեմ: Հաղթեց նրանց, երկու զորավարներին էլ սպանեց: Նա վերականգնում էր եկեղեցիները, քանդում ատրուշանները, դաժան էր վարվում զրադաշտություն ընդունած հայերի հետ, պարսիկ ազնվականներից շատերին սպանում, տիկ էր հանում և խոտով լցնում:

Ապա պարսից զորքը մտնում է Ատրպատականի հայկական մասը: Տեղի է ունենում ճակատամարտ, Մուշեղ Մամիկոնյանի զորքը հաղթում է, պարսից շատ մեծամեծների գերի է վերցնում, գրավում Շապուհի գանձերը, գերում պարսից թագուհուն և Շապուհի կանանցը: Շապուհը փախչում է: Պարսից մեծամեծներից շատերին Մուշեղը սպանեց և նույնպես մորթազերծ արեց, խոտով լցված մորթիները ուղարկեց Պապ թագավորին: Իսկ պարսից թագուհուն և Շապուհի մյուս կանանց նա ասպետաբար ազատ արձակեց: Շապուհը, որ հայոց թագուհուն անպատվել ու սպանել էր, Մուշեղի այս ասպետական քայլից ցնցված, գինու գավաթի վրա նկարել տվեց Մուշեղ Մամիկոնյանին՝ սպիտակ ձիուն նստած և երբ այդ գավաթով գինի էր խմում, ասում էր՝ «Ճերմակաձին թող գինի խմի»,— պատմում է Փավստոսը:

Հովիանոսի հետ Շապուհի կնքած պայ-

մանագրի խախտումը Վաղեսի կողմից պատճառ դարձավ, որ պարսից թագավորը 371 թ. նոր պատերազմ հայտարարի Հայքին ու Հռոմին: Մեծ ճակատամարտ տեղի ունեցավ Ձիրավի դաշտում, որ Նպատ լեռան ստորոտում էր գտնըվում, Արածանիի ափին կառուցված Բագավան ավանի մոտ: Հայկական բանակը ղեկավարում էին սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը և թագադիր ասպետ Սմբատ Բագրատունին, բյուզանդական զորքը՝ Տրայանոս կոմեսը: «Երբ արևը ծագեց,— գրում է Մովսես Խորենացին Ձիրավի ճակատամարտի մասին,— մեր զորքերի դեմ ու դեմ պղնձապատ վահանների ցոլքը լեռների վրա էր փայլատակում, ինչպես մեծ ամպից, և դուրս էին թռչում մեր նախարարներից լավ զըրահավորվածները, ինչպես փայլատակող ճառագայթներ, որոնց տեսքից միայն պարսկական գունդը երկյուղի մեջ ընկավ»: Ճակատամարտում հայերը ռազմավարական արվեստ և խիզախություն ցուցաբերեցին ու գլխովին ջախջախեցին պարսից ամբողջ բանակը:

Պապ թագավորն ու Ներսես կաթողիկոսը գտնվում էին Նպատ լեռան վրա և այնտեղից դիտում ճակատամարտը: Պարսիկների կողմից հայերի դեմ կըռվում էր նաև Աղվանքի թագավոր Ուռնայրն իր զորքով: Այս զորքը ևս ջախջախվեց, իսկ փախչող Ուռնայրին Մուշեղ Մամիկոնյանը հասավ և նիզակով հարվածեց գլխին, ասելով՝ «Շնորհակալ եղիր, որ թագավոր մարդ ես, գլխիդ թագ ես կրում, ես թագավոր մարդու չեմ ըսպանի, մինչև անգամ, եթե շատ նեղն էլ ընկնեմ»: Իսկ հաղթական հայ զինվորները, ըստ այն ժամանակներում եղած վայրենի սովորության, պարտված ու ըսպանված պարսիկ զինվորների հազարավոր գլուխներ կտրեցին ու բերելով գցեցին Պապ թագավորի ոտքերի առաջ:

Այս պատերազմի ժամանակ էլ սպանվում է Մեհրուժան Արծրունին: Խորենացին նրա սպանությունն այսպես է նըկարագրում. հայոց զորքի հրամանատարներից մեկը՝ Սմբատ Բագրատունին հետապնդում է Մեհրուժանին, որի ձին վիրավորվել էր ճակատամարտում: Բագրատունին Մեհրուժանին բռնում է Կոգովտի եղեգնուտներում: Այդտեղ վըրանարձակ մարդիկ կրակ արած խորովածներ էին անում: Եվ Սմբատ Բագրատունին՝ հայոց թագադիր ասպետը, շամ-



Պապ թագավոր

փուրներից մեկը օղակ է անում, շիկացնում ու դնում Մեհրուժանի գլխին, ասելով. «Քեզ պսակում եմ, Մեհրուժան, որովհետև դու ձգտում էիր հայոց վրա թագավորելու, և իմ՝ ասպետիս պարտքն է քեզ պսակել իմ հայրենի իշխանության կարգով»:

Երկրի ներսում Պապը վարում էր Արշակ II-ից վիրավորված նախարարներին սիրաշահելու քաղաքականություն: Նա հաշտվում է նաև Սպանդարատ Կամսարականի հետ, որը, հիշենք, փրկված միակ մարդն էր Կամսարականների նախարարական տնից: Սպանդարատը Հայաստանի ծանր պահին, մոռանալով Արշակ թագավորի դաժան հաշվեհարդարը իր տոհմի նկատմամբ, գալիս է երկիր, մասնակցում Ձիրավի ճակատամարտին և շատ օգնում տալիս հայոց զորքին: Պապը նաև շինարարական մեծ աշխատանքներ կատարեց: Նա թեթևացրեց հայ գյուղացիների վրա դրված ծանր հարկերը: Միաժամանակ, պակասեցրեց հայ եկեղեցու հողային կալվածքները: Փակում էր կուսանոցները՝ պարտադրելով կույսերին ամուսնանալ, հոգևորականների քանակն էր պակասեցնում, քահանաների իրավունքները սահմանափակում: Ժողովրդին թույլատրեց կատարել Ներսեսի կողմից արգելված հեթանոսական ծե-

ները, մասնավորապես ողբի ծեսը մեռելների վրա: Պապը նաև պակասեցնում էր Ներսես Մեծի հիմնած բարեգործական հիմնարկները՝ հիվանդանոցները, որբանոցները, ծերանոցներն ու հյուրանոցները:

Այս ամենը, պարզ է, որ դուր չէր գալիս Ներսես Մեծին, որը ջանադրաբար շարունակում էր իր բարեգործությունները ժողովրդի մեջ՝ խնամում աղքատներին, մխիթարում պատերազմից տուժածներին, բուժում հիվանդներին:

Թագավորի և կաթողիկոսի այս հակառակ դիրքերը պատճառ դարձան, որ ժողովրդի մեջ լուր տարածվի, թե Պապ թագավորը թունավորել է Ներսես Մեծին, որը մոտ 20 տարի ամենայն հայոց կաթողիկոսությունն անելուց հետո վախճանվել էր 372 թվականին: Փավստոսն ու Խորենացին էլ են գրել, որ իբր Պապ թագավորն է սպանել տվել Ներսես կաթողիկոսին, բայց այնպես էլ անհայտ մընաց, թե, իրո՞ք, Պապը որևէ դեր ունեցել է Ներսես Մեծի մահվան գործում: Հավանաբար, չի ունեցել:

Հայոց նոր կաթողիկոսի թեկնածու է առաջադրվում Շահակ (Սահակ) Մանազկերտցի եպիսկոպոսը՝ Աղբիանոսի տոհմից: Հայ կաթողիկոսները, ինչպես գիտենք, սովորաբար, ձեռնադրվում էին Կապադովկիայի Կեսարիա քաղաքում, այսինքն հռոմեական հողում, որով Հայաստանի եկեղեցին միշտ կախման մեջ էր գտնվում հունական եկեղեցուց: Պապի կարգադրությամբ Շահակը կաթողիկոս է ձեռնադրվում Հայաստանում, և դրանից հետո հայոց կաթողիկոսներն սկսեցին Հայքում ձեռնադրվել:

Պապը նաև հզորացրեց հայոց բանակը, մշտական բանակի զինվորների քանակը հասցնելով 90 հազարի:

Պապի կարգադրությամբ Մուշեղ Մամիկոնյանը Մեծ Հայքից անջատված երկրամասերը մեկ առ մեկ վերամիավորում էր Արշակունյաց գահի ներքո, ամբողջացնում էր Մեծ Հայքի տարածքը: Մուշեղը շատ դաժան էր վարվում անհնազանդ բդեշխների, նախարարների, իշխանների հետ. նրանց գլխատում էր, սպանում, հաճախ ոչնչացնում ամբողջ տոհմը, նախարարների զավակներին գերի էր վերցնում, շեներն էր ավերում: Հիշենք, թե ինչպես էին Մեծ Հայքը միավորում կամ վերամիավորում հայոց նախորդ թագավորները՝ Մենուան, Արա-Արգիշտին, Արտաշես I-ը, Տիգրան Մեծը՝ թե՛ խաղաղությամբ, թե՛ դաժան բռնություններով: Այդպես Մուշեղ Մամիկոնյանը Մեծ Հայքի մեջ վերամիավորեց հայ-պարսկական պատերազմների ժա-



Մուշեղ Մամիկոնյանի մահը

մանակ անջատված Նորշիրականի, Աղձնիքի, Ծոփքի և Գուգարքի բդեշխությունները, Կորդուքը, Տմորիքը, Արցախը, Փայտակարանը և այլն: Աղվանքից խլեց Ուտիքի հյուսիսային մասը, որ աղվանները գրավել էին Արշակից հետո՝ խառը ժամանակներում: Մուշեղը մտավ նաև Վրաստան, նվաճեց այս երկիրը, ապա մի կողմից Հայաստանի, մյուս կողմից Աղվանքի ու Վրաստանի միջև վերականգնեց հազարամյակների սահմանը, որ անցնում էր Քուռ գետով: Մուշեղի մասին Փավստոսն այսպես է գրում. «Թույլ չէր տալիս, որ թեկուզ մի կորու չափ հող Հայոց աշխարհի սահմաններից խլվի... Զորավար Մուշեղը հերոսական պատերազմով կյանքը դրել էր երկրի համար, իր կյանքը չէր խնայում, իր բոլոր օրերում նա աշխատում էր իր իսկական տերերի՝ Արշակունիների համար»:

Պապ թագավորը ջանաց նաև բարելավել Հայաստանի ու Պարսկաստանի հարաբերությունները, որ դուր չեկավ Հռոմին: Պապը նաև ջանում էր Հայաստանի Բագրևանդ գավառում գտնվող հռոմեական զորամասը հանել երկրից: Այդ զորամասի հրամանատար Տերենտիոսը Վաղես կայսրին նամակներ էր գրում՝ ամբաստանելով Պապին իբր պարսկական կողմնորոշում ունենալու համար: Նա գրում էր, թե Պապ թագավորն անցել է Շապուհ II-ի կողմը:

Իրականում, Պապը ոչ պարսկական, ոչ էլ հռոմեական կողմնորոշում ուներ և ոչ մեկի կողմը չէր անցել: Նրա կողմնորոշումը հայկական էր, նա ջանում էր թե Պարսկաստանի, թե Հռոմի հետ լավ հարաբերություններ ստեղծել Մեծ Հայքի անկախությունն ու ամբողջությունը պահպանելու նպատակով: Այսինքն նա հոր՝ Արշակի նման հայկական անկախ քաղաքականություն էր վարում: Եվ ամենից ավելի հենց սա էր, որ դուր չէր գալիս Հռոմին: Այն ատիճան, որ Վաղես կայսրը որոշեց սպանել հայոց թագավորին: Ինչպես գրում է Ամիանոս պատմիչը, Վաղես կայսրը Պապին հրավիրում է Կիլիկիայի Տարսոն քաղաքը բանակցությունների: Պապը 300-անոց ջոկատով գնում է կայսրի մոտ, բայց կայսրի հայ սպասավորներից իմանալով, որ իրեն ուզում են ծուղակը գցել, փախչում է: Կայսրը զորամաս է ուղարկում Պապին բռնելու, բայց չի հաջողում: Իմանալով Վաղես կայսրի դավադիր նպատակն իր նկատմամբ, Պապը, այնուամենայնիվ, հանուն Հայաստանի, շարունակում էր նրա հետ լավ հարաբերություններ պահպանել:

Պապը գիտեր, որ Տերենտիոս զորավարն իր դեմ ամբաստանող նամակներ է գրում կայսրին: Երևի այդ զգալով՝ կայսրը որոշում է Պապին միամտացնել. նա Տերենտիոսին ետ է կանչում ու փոխարենը Հայաստան ուղարկում մի ուրիշ զորավար՝ Տրայանոսին: Նրան հանձնարարություն է տալիս որևէ կերպ սպանել հայոց թագավորին: Եվ Տրայանոսը Պապին բարեկամ ձևանալով՝ ճոխ ճաշկերույթ է կազմակերպում ու հրավիրում հայոց թագավորին: Այս մասին մանրամասն գրել է Ամիանոսը. «Դավադրությունը վերջնականապես կազմակերպելուց հետո, նա Պապին ամենաքաղաքավարի ձևով հրավիրում է իր մոտ: Պապը չկասկածելով ոչ մի բանից՝ գալիս, նըստում է իր համար նշանակված պատվավոր տեղում: Մատուցվում են ամենաըննտիր կերակուրները, ընդարձակ դահլիճը դղրդում է լարային ու փողային գործիքների նվագից և երգեցողությունից: Երբ գինին սկսում է իր ներգործությունը, և մարդիկ տաքանում են, խնջույքի կազմակերպողը ինչ-որ պատրվակով դուրս է գալիս և իր հետ բերում ահեղ տեսքով մի բարբարոսի՝ այն զինվորներից, որոնք կոչվում են սուսեր (գերմեծ): Գազանային հայացքով վայրենին սուրը պատյանից հանած առաջանում է սպանելու երիտասարդ թագավորին, որի համար կտրված էին դուրս գալու բոլոր ճանապարհները: Թագավորը, որ թեքվել էր օթյակում, տեսնելով նրան, կանգնում է, հանում դաշույնը՝ պաշտպանելու իր կյանքը, բայց ընկնում է խոցված կրծքով, որպես խայտառակ զոհ՝ անամոթաբար խփված երկրորդ հարվածից: Այսպիսի անարգ նենգությամբ դյուրահավատությունը խարդավանվեց. օտարականի արյունը փրփրալով թափվեց շքեղ սեղանածածկոցների վրա»: Սա 374 թվականն էր:

Այսպես, թեև Պապ թագավորը քաջ ծանոթ էր Հռոմի բյուզանդական խարդավանքներին, բայց իր դյուրահավատության պատճառով զոհ գնաց դրանց:

Հայրը զոհվեց հայոց մի հակառակորդի՝ պարսիկների, իսկ որդին՝ մյուս՝ հակառակորդի՝ Հռոմի դավերին:

Հայքը թուլանում էր:

(շարունակելի)

# ԱՐՀԵՍՏՆԵՐԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

ԱՇՈՏ ՔԵՐՈԲՅԱՆ



## ԴԱՐԲՆՈՒԹՅՈՒՆ

Երբ անցնում ես Լոռվա ձորերով, ու ականջիդ է հասնում Դեբեդի շտապող ջրերի խշշոցը, թվում է՝ անցնում ես պղնձե լեռների միջով։ Այդպես է իսկապես, որովհետև այդ լեռների մեջ է ծվարել Ալավերդի փոքրիկ քաղաքը։ Այն հռչակավոր է մեր երկրում իր պղնձի հանքերով ու պղնձաձուլական գործարանով։ Իրար կիպ կպած լեռների ընդերքից հանված պղնձին գումարվում է Զանգեզուրից բերվածը, դրանք վառարանների բովով անցնելուց հետո դառնում են պղնձե ձուլակներ։ Դրանք հետո պիտի հզոր մամլիչների տակով անցնեն, պիտի ձգվեն ու ոլորվեն, մասնատվեն ու նորից աներևութանան և հայտնվեն մեր կենցաղի մեջ արդեն որպես գեղեցիկ մի սարք կամ գործիք՝ այնքան մատչելի այսօր, որ կարող ենք չնկատել անգամ։ Այսօր այդ պղնձի քիչ մասն է անցնում կռող ու կոփող վարպետների մուրճի տակով։ Եթե անցնում էլ է, ապա դառնում զարդ կամ հուշանվեր, կամ մի փոքրիկ արձան, որոնց թիվն ավելի քիչ է, քան հազարամյակների խորքը հասնող պեղումներից հանվածները։ Այդ հին սկահակները, սկուտեղներն ու սրերը դարբնի գործ են եղել, որովհետև ի սկզբանե դարբինն է եղել, հետո միայն, հինգերորդ դարում արդեն, դարբինն ու պղնձագործն առանձին են հիշատակվում։ Իսկ միջնադարյան Հայաստանում այդ երկու հիմնական արհեստներն այնքան էին զարգացել, որ դրանց ճյուղավորումների թիվը հասնում էր երկու տասնյակի։ Կային դարբիններ, զինագործներ, փականագործներ, դանակարարներ, անվագործներ, պայտագործներ և էլի շատ առանձին ճյուղեր։ Այսքանը միայն երկաթագործության մեջ։

Դարբնությունը Հայաստանի հնագույն արհեստներից է, հնագույնն է նաև աշխարհում, որովհետև մարդկության պատմության մեջ Հայաստանը երկաթի հա-

նույթի բնօրրաններից մեկն է եղել: Այդ է վկայում Մեծամորի համալիրը, որ հայտնաբերվեց 1965—1966 թվականներին: Պեղումները հայտնաբերեցին հնագույն արտադրական կառուցվածքների մի ամբողջ համալիր: Մետաղաձուլական վառարանների երկու համակարգ հայտնաբերվեց, որոնց կողքին արտադրական թափոններ կային: Կային նաև կիրառական արվեստի բացառիկ նմուշներ: Մեծամորում հստակորեն դիտվում է հանքանյութի կոտորակման, հարստացման, մետաղի հալման, ձուլման ու պատրաստի իրերի մշակման մի ամբողջ արտադրաեղանակ: Հայտնաբերվել են նույնիսկ հալման ժամանակ մետաղի վերականգնման արագընթացքի համար այսօր կիրառվող ոսկրակավային սալիկներ ու դրանց ստացման արտադրական միջոցները: Ապշեցուցիչն այն է, որ հինգ հազար տարի առաջ հանքի հարստացման ու ձուլման եղանակների մեջ համարյա փոփոխություն չկա: Այսինքն՝ եղել է նաև աշխատանքի խիստ բաժանում. հանքափոր-հարստացնող-ձուլող-մշակող: Սա նաև նշանակում է պետականության գոյություն: Հին աշխարհի քարտեզի վրա նշվում է մետաղամշակման վեց-յոթ շրջան, որոնցից մեկը Հայաստան աշխարհն է, իսկ քարտեզն ընդգրկում է Չինաստանից մինչև Պիրենյան թերակղզին: Հին Եգիպտոսի պատմիչ Մանեթոնն հիշատակում է Հայաստանից արտահանված երկաթե մարտակառքերի մասին: Իսկ պատմությունը պահպանել է Եգիպտոսի նվաճման փաստը հիքսոսների կողմից, որոնց սրընթաց արշավանքը նույնքան սարսափելի չէր լինի, եթե չլինեին կառքերի աջ ու ձախ կողմերում սռնիներին կապած գերանդիները, չլինեն եգիպտական անթիվ զինվորների վախն անծանոթ ու սարսափելի չորքոտանիներից՝ ձիերից, որոնց ընտելացնելու նախապատվությունն էլ Մանեթոնը տալիս է հայերին:

Այսպես է եղել բանը: Ո՞չ իմանաս, գուցե առաջին դարբինն էլ հայ է եղել: Ուշտունյաց սարերից երկաթահանքը հասել է մինչև Հաղարծնի ձուլման վառարանները: Հսկա փուքսերով օդ է մղվել վառարանի մեջ: Դա դժվար գործ էր, մարդը չէր կարողանում: Վարժեցրել են արջեր ու նրանց գործի դրել: Չնայած դարբինները էլ պակաս ուժի տեր չեն եղել, սակայն նրանց ուժ պետք էր ուռնով երկաթը կռելու համար: Հայ հին գրականությունը պահպանել է ուռնան կամ ուռնավոր բառը:

Հազարամյակներ էին հարկավոր, որպեսզի թուջը քիչ թե շատ մաքրվեր ու դարբնին հասներ երկաթի նման մի բան: Իսկ դարբինն արդեն գիտեր փափուկ երկաթը կոփել, գիտեր այն փայտածուխով կարծրացնելու ձևերը: Նույնիսկ զոդել գիտեր դարբինը, որի գյուտը վերագրվում է Գլավկոս Քիացուն: Զոդելու համար օգտագործվում էին դյուրահալ մետաղ և օժանդակող բորակ կամ գայլախազի փոշի, որ բերում էին Արծրունիքի մոտերքից: Զոդելը զենքը դարձրեց ամուր, խոփը՝ ավելի դիմացկուն: Եռուցանել է կոչվել նաև զոդելը, որ որպես պատկերավոր արտահայտություն, անքակտելի կապի խորհրդանիշ, կիրառվել է քարոզներում: Հայ հնէաբանության երախտավոր Կարո Ղաֆադարյանը Դվինի միջնաբերդի պեղումների ժամանակ գտել է մի բահ, որի ծայրին զոդված է եղել պողպատե սայր:

Միջնադարյան Հայաստանում դարբինները այնքան էին հմտացել, որ երկաթե ջրատար խողովակներ էին պատրաստում, որոնք իրար հետ կցվում էին եռուցանելու միջոցով: Այդպիսի խողովակներ են հայտնաբերվել 1908 թ. Անիի պեղումների ժամանակ: Այդ խողովակաշարը անցնում էր Բագրատունիների պալատի պատի սվաղի տակով դեպի դահլիճի զովացնող շատրվանները:

Դեռ հինգերորդ դարից դարբին-զինագործներով հռչակված էր Դվինը, իսկ տասներորդ դարից սկսած՝ շուրջ երեք հարյուր տարի Անի մայրաքաղաքն էր արհեստավորության կենտրոնը: Զինագործները պողպատից օղազրահներ էին պատրաստում, առանձին թիկնապանակներ, լանջապանակներ, սռնապան՝ սրունքների համար, ծնկապան՝ կոնքերի համար, մույլ՝ ոտքերին հագնելու համար: Հեծյալները զրահներ էին պատրաստել տալիս նաև ձիերի համար: Եվ այդպես զինավորված, ծանր ու դանդաղաշարժ՝ կռիվներ էին մղում, ու՝ վայ ընկնողին: Խաչակրաց անփառունակ ութ արշավանքներից ամենահաջողը երևի չորրորդը լիներ, եթե գերմանացի Ֆրիդրիխ Բարբարոսա զորավարի ձին չսայթաքեր Փոքր Հայքի լեռնային մի գետակ անցնելիս: Ձին սայթաքեց, հեծյալն իր ծանր զրահներով ընկավ այդ ոչ այնքան խոր գետակը և չէր կարողանում բարձրանալ: Իսկ շրջապատող

զինվորները իրավունք չունեին դիպչելու անգամ թագավորին, էլ ուր մնաց օգնության ձեռք մեկնեին նրան: Եվ կարգուկանոնին չափազանց հնազանդ զինվորների սարսափած հայացքի տակ այդ փոքրիկ առվակի մեջ խեղդվեց Բարբարոսա զորավարը: Դաշնակիցների զորքերը մնացին առանց առաջնորդի և վերադարձան իրենց երկրները, իսկ քրիստոնյա եղբայրների ազատագրության գաղափարը մնաց հաջորդ արշավանքներին:

Սա երևի դարբինների տված միակ վնասն է, որովհետև նրանց գործը միշտ եղել է ուժի ու բարության խորհրդանիշ: Նույնիսկ միջնադարյան երազահանների մեջ ասվում է, որ երազում եթե դարբին տեսնես՝ մեծ գանձ կգտնես, իսկ եթե ինքդ ես դարբնություն արել՝ մեծ մարդ կդառնաս:

Դարբնին եթե ուժ էր պետք ուռնը բանեցնելու համար, կաշվե հաստ գոգնոց, որ հարվածից թռած կայծերից այրվածքներ չստանա, ապա պղնձագործին հիմնականում հալելու փոքրիկ վառարաններ էին հարկավոր և կաղապարներ, որ հալած ոսկեգույն պղինձը լցնի դրանց մեջ: Պղնձագործի աշխատելու հիմնական եղանակներն էին կռելը, դրվագելը, դրոշմելը և ձուլելը, որի մասին ասացինք:

Կռելով նրանք հիմնականում հարթ իրեր էին պատրաստում, ամաններ: Իսկ դրվագում էին ավելի բարակ թիթեղները: Կաղապարի վրա փոքր մուրճերով ծեծում էին ու տալիս համապատասխան ձևը: Հետո նման երկու կեսերն իրար միացնելով ստանում էին սնամեջ իրը: Կամ էլ գծագրում էին թիթեղի վրա ուզած պատկերն ու ձևր, հետո ներսի կողմից հարվածելով, ստանում ուռուցիկ կամ գոգավոր նախշեր ու ձևեր: Այս եղանակով պատրաստված շատ ճոխ մի գոտի է գտնվել Անիում: Դրա վրա պատկերված հովազի, վագրի ու առյուծի շարժումներր չափազանց ճկուն են ու արտահայտիչ:

Պղնձագործներն աշխատում էին նաև դրոշմազարդելու եղանակով: Համապատասխան պատկերով կամ նախշով դրոշմը դնում էին բարակ թիթեղի վրա ու հարվածում: Պատկերն ու նախշը դրոշմվում էին պղնձի վրա: Անիի մոմակալը կռածո է, որի վրա դրոշմազարդ նախշեր կան: Ամենատարածվածը, սակայն, ձուլման եղանակն էր, որի միջոցով պատրաստում էին ասեղից սկսած մինչև հսկայական կաթսաներ: Բարդ ձուլածո իրերի համար օգտագործում էին կավե կաղապարներ-նմանակներ, իսկ մոմե նմանակներն ավելի նուրբ նախշազարդ իրեր ստանալու համար էին օգտագործում: Մոմե նմանակի վրա քսում էին նուրբ կավից պատրաստված խյուսը: Չորանալուց հետո կավի վրա էր անցնում պատկերը: Հետո տաքացնում էին ու հալված-դուրս եկած մոմի փոխարեն լցնում էին հալած մետաղը: Այս եղանակը աշխատատար էր ու շատ թանկ, դրա համար էլ այնքան կիրառելի չէր: Զանգեր էին ձուլում այսպես մինչև քառասուն կիլոգրամ քաշով, ինչպես Անիի մայր տաճարի զանգերը:

Պղնձագործների մոտ առանձին արհեստի հարգ ուներ ջահագործությունը, աշտանակաշինությունը: Այդ վարպետները իսկական արվեստի նմուշներ էին ըստեղծում: Այստեղ արժե խոսել Անիի Գագիկի տաճարի ջահի մասին, որ պեղել են 1906 թվականին: Նա ընկած է եղել ավերված տաճարի հենց գմբեթի տակ: Կախված է եղել քսան մետրանոց 192 օղ ունեցող շղթայով: Երեք զույգ պղնձե ժապավեններ գմբեթի տակ միացել են շղթային: Ունեցել է խոշոր ու վեց միջին մեծության լամպ, 72 փոքր ճրագ, 12 ավելի փոքր և 18 մանրիկ ճրագ: Բոլորը միասին՝ 117 լուսատու: Դրվագազարդ մեծ ու փոքր թռչունների կտուցներից են կախվել այդ լուսատու կետերը: Ճրագների գույնզգույն ապակիները ջահի փռված վիճակում արտակարգ ճոխություն են հաղորդել տաճարին: Այդ ջահը տասնըմեկերորդ դարի պղնձագործների լավագույն նմուշներից է: Առայժմ այդքան ճոխ ջահ դեռ չի գտնվել Հայաստանի տարածքում:

Այստեղ չխոսեցինք երկաթագործության ու պղնձագործության հետ առնչվող շատ ու շատ արհեստների մասին, որոնք չեն հասել մեր օրերը, չխոսեցինք նետարարների մասին, չխոսեցինք պայտարարների մասին, անվագործների մասին, որոնց գործի համար փայտը բերում էին Սարիղամիշի անտառներից միայն կամ էլ Տավրոսի լեռներից: Սակայն այսքանից էլ պարզ երևում է, որ մեր բազմանդամ մշակույթը իր պսակի մեջ է առել նաև երկաթագործության հետ կապված երկու տասնյակ արհեստներ, որոնցից շատերը այսօր էլ ծաղկում են, ինչպես միջնադարում, ինչպես ավելի հնում, ինչպես հազարամյակներ առաջ:

# Ագտաղի ակացիաների հոտերը

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ





Ցածում էին մնացել գաճաճ կաղնու անտառակները, լեռները մերկ էին, արևի տակ՝ նարնջագույն կողերով: Ավտոբուսը դանդաղ բարձրանում էր լեռները: Ավտոբուսում մարդիկ մռայլ էին, և ինչ-որ մեկն ասաց. «Շուտով կհասնենք Ագտաղ»: «Ագտաղում մրրիկները պոկում են կղմինդրածածկ տանիքը ու շպրտում են կիրճը». պատմել էր հայրը:

— Իսկ ի՞նչ են անում Ագտաղում մարդիկ,— հարցրեց տղան:

— Ագտաղում մարդիկ փնտրում են թանկարժեք մետաղ,— ասաց հայրը:

Ավտոբուսն անցավ պաղ մշուշների միջով, ցածում թողեց գագաթները, իսկ վերևում ուրիշ գագաթներ էին՝ նարնջագույն մշուշների մեջ: Ագտաղ հասան երեկոյան մոտ: Ավտոբուսը կանգ առավ փոքրիկ հրապարակում: Մանիշակագույն, բոլորովին մաքուր երկինքը, թվում էր, սկսվում է կղմինդրածածկ տանիքների ետևում: Ցուրտ էր, և փոքրիկ բանավանը, ճերմակ ներկված տնակներով, արնից կարմրատակած տանիքներով, տղային թվաց սքանչելի: Անցան փոքրիկ խանութի մոտով, ուր վաճառում էին նպարեղեն, կոնֆետներ, կոշկեղեն, լուսանկարչական ապարատներ և ապխտած ձուկ:

— Ողջո՛ւյն, Պարգև,— ասաց խանութի վաճառողը,— քո՞ տղան է:

— Իմն է:

— Հիանալի տղա է:

— Դու նրան չես ճանաչում,— ասաց հայրը:

— Ի՞նչ ես ասում, չի կարող պատահել, որ նա վատ տղա լինի,—ասաց վաճառողը:

— Մայրը երկու օրով գնացել է գործուղման, բերել եմ, որ այնտեղ պատմու-

թյուններ չսարքի։
— Հիանալի տղա է,— ասաց խանութի վաճառողը։— Լսիր, տղա,— ասաց նա,— երբ քեզ մոսկովյան կոնֆետներ պետք լինեն, վազիր ինձ մոտ, քեզ համար միշտ կունենամ։
— Շնորհակալ եմ,— ասաց տղան։
— Բարեկամներ կլինենք։
Տնակը, ուր ապրում էր հայրը, գտնըվում էր բանավանի ծայրամասում։ Ներս մտան։ Պատերի տակ դրված էին մետաղե ցածր մահճակալներ, անկյունում ընկած էր հաստ պարանի փաթաթ, հատակին՝ հողոտ երկարաճիտ կոշիկներ, ինչ-որ մետաղե կեռեր, պատին կախված էր զինվորական մի դատարկ պայուսակ։ Սեղանին՝ դատարկ շշեր, բաժակներ, մի ափսե և ծալովի դանակ։ Երկու փոքրիկ լուսամուտներից սենյակը լուսավորվում էր պղտոր, իսկ լուսամուտներից այն կողմ, հենց դիմացը, մանիշակագույն երկինքն էր։
— Ահա այստեղ դու կապրես երկու օր,— ասաց հայրը,— մինչև մայրդ կհեռագրի և կարելի կլինի քեզ ուղարկել քաղաք։
Ինչ-որ անսովորության զգացումից տըղայի գլուխը շշմեց։
— Առայժմ սա կլինի քո մահճակալը,— ասաց հայրը,— նրա տերը գնացել է կնոջ մոտ և շուտ չի վերադառնա։ Եթե քաղցես, պահարանում որևէ բան կճարես։ Ես գնում եմ հանքախորշ։
Այստեղ տղայի համար սկսվում էր մի նոր, բոլորովին անծանոթ աշխարհ։ Եվ ինչո՞ւ հայրը մինչև հիմա նրան չէր ծանոթացրել այդ աշխարհին։ Տղան ճանապարհից հոգնած էր և շուտով քնեց։
Արթնանալով, նա տեսավ սեղանի մոտ նստած մի մարդ։ Հողոտ արտահագուստով, լայնեզր գլխարկը աչքերին քաշած, լայն պնչերով։ Դա, ըստ երևույթին, այնքան էլ բարեկիրթ մարդ չէր։ Չսափրված ծնոտը հենել էր ծանր ձեռքերին, կլոր, արյունոտ աչքերով նայում էր տղային։
— Դու Սե՞թն ես,— ասաց նա,— հայրըդ քո մասին պատմել է։ Եկ ծանոթանանք, ես Մգրն եմ։ Ինչպե՞ս են գործերդ։
— Լավ են,— ասաց տղան։
— Անկեղծ ասա, չե՞ս նեղանում, որ ես մի քիչ խմած եմ։
Տղան տարուբերեց գլուխը։
— Այ, քեզ սիրեցի,— ասաց Մգրը։— Այստեղ ոչ ոք մարդու հասկանալ չի ուզում։ Ուզո՞ւմ ես ցույց տամ իմ տղաների նկարները։ Մոտ արի։
Մթնում էր, երբ եկան հայրը, Միսեն ու Շմոն։ Միսեն նիհար էր, նեղ ուսերով, նույնպես լայնեզր գլխարկը գլխին խըրած, երկարավուն դեմքով, աչքերը՝ տըրտում։ Շմոն մտավ ներս, գործիքները դրեց անկյունում, դարձավ. կարճահասակ էր, մազոտ ծոծրակով, կորացած, ձեռքերը լայն ու կարճլիկ, կարճ եղունգներով։ Ընթրեցին առանց ծածկոցի սեղանի վրա։ Կերան ապխտած երշիկ, սոխ, խմեցին կարմիր գինի։ Դրսում սկսվեց քամին։ Սկսեց բվբվալ տանիքում, ծեծել լուսամուտների ապակին։ Միսեն փայտի մի կտորից դանակով տիկնիկ շինեց.
— Սա Բիբին է,— ասաց նա տղային,— պահիր քեզ մոտ, երբ ոչ ոք չլինի, խոսիր նրա հետ։ Բիբին քո ամենամտերիմ մարդը կդառնա։ Բիբին քեզ թեթևություն կբերի։
— Իսկ ո՞վ է քո ամենամոտիկ մարդը,— հարցրեց տղան։
— Դեռ չեմ գտել,— ասաց Միսեն,— բայց անպայման կգտնեմ։
Դրսում մոլեգնում էր քամին։ Տղան պառկած էր մահճակալին, նրա տակի ներքնակը չոր ծղոտի հոտ էր բուրում։
— Դա մի քաղաք էր, ուր մարդիկ չգիտեին, թե ինչ է դժվարությունը,— պատմում էր Շմոն։— Նրանց ամեն ինչ տըրվում էր առանց որևէ դժվարության։
Հողմը մոլեգնում էր դրսում։ Չես հավատում, թե այսպիսի եղանակին մարդ կարող է տնից դուրս գալ։ Տղան լսում էր, թե ինչպես քամու հարվածներից ճքճքում էր տանիքը։ Սեղանի վրա տարուբերվում էր ցածր կախված լամպը։
— Դա մի քաղաք էր, ուր բոլոր մարդիկ չգիտեին, թե ինչ բան է աշխատանքը,— շարունակում էր Շմոն իր պատմությունը։— Նրանց ամեն ինչ տրվում էր առանց աշխատանքի։ Հեշտ ապրելուց նրանք ծուլացել էին, ճարպակալել, կորցրել մարդկային ամեն կերպարանք։ Եվ ահա, նրանց միջի ամենածեր և ամենաիմաստուն մարդը, որը և նրանց առաջնորդն էր, հավաքում է մարդկանց քաղաքի հրապարակում և ասում է. «Այսպես շարունակել չի կարելի, մենք ծուլացել ենք, մենք կորցրել ենք մեր մարդկային ամեն կերպարանքը, պետք է գըտնել դժվարություններ և աշխատանք, որպեսզի մենք նմանվենք սովորական մարդկանց»։ Այստեղ նրան դեմ խոսողներ ե-




դան... Ես դեռ չեմ որոշել, թե ինչպես պիտի վերջանա այս հեքիաթը:

Շմոն լռում է, ականջ է դնում հողմերի բվվոցին:

Այսպես կշարունակվի մինչև առավոտ:

Շմոն պատմում է, թե ձմռանը այսպիսի եղանակներին տնակի պատերի տակ ոռնում են գայլերը, իսկ բուխարիկում մեղմ թշշում է կրակը, ճայթում են փայտերը: Շմոն գիտի պատմել այնպես, որ ամեն ինչ պատկերացնում ես: Հաճելի է Շմոյին լսելը:

— Եվ այդ երանելի քաղաքում մարդիկ ասում են. «Մեզ տրված են մկաններ, որպեսզի մենք աշխատենք, մեզ տրված են ջղեր, որպեսզի մենք դժվարություններ հաղթահարենք»...

Ուշ պառկեցին քնելու: Տղան երկար ժամանակ ունկնդրում էր հողմերի սուլոցին: Նա տեսավ, թե ինչպես կայծակը զարկեց հենց պատուհանից այն կողմ, սենյակը ողողվեց լույսով, դղրդաց ու լեռնագագաթների վրայով հեռացավ որոտը: Տղան երբեք այդքան մոտ չէր տեսել ամպրոպը: Տղան մտածում էր. հիմա քաղաքում դեռ վառվում են լույսերը, փողոցները, կինոթատրոնները դեռ լիքն են մարդկանցով: Իսկ Ագտաղի վրայով թռչում են միայն ինքնաթիռները: Ամպերը երբեմն դժվարանում են Ագտաղից ավելի վեր բարձրանալ և նստում են լանջերին: Ինչ-որ մեկը թակեց լուսամուտը: Ո՞վ կարող է այդպիսի եղանակին դըր-

սում լինել, ի՞նչ է նրան հարկավոր:
— Պարգև, չորրորդում փլվել է,— ասացին դրսից:
— Գալիս ենք,— ասաց հայրը:
— Մխելու բան տվեք,— ասաց Մգրը:
— Ժամանակը չէ,— ասաց Շմոն:
Հայրը ծխախոտ տվեց: Սկսեցին հագնըվել:
— Դու քնիր,— ասաց հայրը տղային:— Չորրորդում փլվել է:
Դուռը բացեցին, ներս լցվեց անձրևի շառաչը, և նրանք մեկը մյուսի ետևից գնացին մութի միջով: Տղան արագ հագնըվեց, ոտքերին քաշեց անկյունում ընկած երկարաճիտ կոշիկները, վազեց նըրանց ետևից: Վազում էր քամուն հանդիման, անձրևի տակ, մի ձեռքով գըլխարկը գլխին սեղմած: Անձրևի ու մութի մեջ բանավանի տնակները թվում էին աղավաղված, միայն կայծակների կարճ բռնկումների պահերին տնակները ասես կանգնում էին իրենց տեղում՝ կուրացուցիչ ճերմակ պատերով, մութ տանիքներով: Հասավ սարավանդ, վազեց երկաթգծի երկայնքով, տեսավ, թե ինչպես դանդաղ հանքախորշի երախին էր մոտենում բեռնասայլերի շարքը: Յատկեց վերջին բեռնասայլին: Անցան աղոտ վառվող էլեկտրական լամպերի մոտով: Հանքախորշի առաստաղից թափվում էր ջուրը, գետինը ծածկված էր ջրով, ջրի մեջ աղոտ արտացոլվում էին էլեկտրական լամպերը: Վերջապես կանգ առավ: Առջևում մութ էր. տղան վար ցատկեց, ջրի միջով վազեց առաջ, տեսավ շարժվող լույսերը:
— Հե՜յ, այդ ո՞ւր,— նրա ետևից բղավեց մեքենավարը:
Տղան ջրի միջով վազեց դեպի լույսերը և տեսավ, թե ինչպես վերևից թափվող ջրի տակ մարդիկ քանդում էին թափված ապարը: Նա փնտրում էր հորը, բայց նրանք՝ բրեզենտե արտահագուստով, մետաղե սաղավարտներով, բոլորըն էլ իրար նման էին: Ինչ-որ մեկը բըռնեց նրա թևից:
— Սա ի՞նչ է: Ո՞ւմ տղան ես,— հարցրեց:
Մի ուրիշը մոտեցավ, լուսավորեց տըղայի դեմքը:
— Ախր դու ինչո՞ւ ես եկել այստեղ,— նրա վրա զայրացած գոռում էր ինչ-որ մեկը:— Եվ ինչպե՞ս է նա կարողացել խցկվել այստեղ:
Նրա վրա գցեցին բրեզենտե բաճկոն, գլխին դրեցին մետաղե սաղավարտ: Տըղան չէր հասկանում, թե շուրջն ինչ է կատարվում:
— Ախր դու ի՞նչ գործ ունես այստեղ,— ասում էր նրա թևը բռնած մարդը,—այստեղ ամեն րոպե կարող է փլվել, տեսնո՞ւմ ես ինչ անհաջող օր է...
Տղային ետ ուղարկեցին: Հանքախորշից մինչև տնակը նա վազեց: Ամբողջովին թրջվել էր: Ցրտից ամբողջ մարմնով դողում էր: Հանվեց, կծկվեց վերմակի տակ ու տեղնուտեղը քնեց: Արթնացավ, երբ դրսում խաղաղ էր: Մութն սկսում էր նոսրանալ: Տնակի ներսում ցուրտ էր: Դրսից մարդկանց խոսակցություն ձայներ լսվեցին: Հայրը ներս եկավ հենց բրեզենտե ցեխոտ, թաց արտահագուստով, իսկ նրա հետ նաև Շմոն, Մգրը, Մխեն, ոտից գլուխ թրջված, ցեխոտ:
— Սա ի՞նչ է,— ասաց հայրը, տեսնելով բրեզենտե բաճկոնը:
— Ասացին, նա եկել է հանքախորշ,— ասաց Շմոն:
— Աստված իմ,— ասաց հայրը:— Ախըր, ես ասում եմ, որ նա որևէ օյին կըխաղա: Դե, խնդրեմ: Ի՞նչ էիր անում հանքախորշում:
— Նա մրսել է,— ասաց Մգրը:— Սպասիր, հիմա դրա ժամանակը չէ: Հարկավոր է թեյ դնել:
Մգրը ինչ-որ տեղից հանեց, սեղանին դրեց մի շիշ օղի, հաց, պանիր ու սոխ: Տղան սեղանի վրա տեսնում էր Շմոյի պինդ դաստակները, հայրը լայն թիկունքով նրանից ծածկել էր լույսը: Մգրի պարանոցի երակները խոսելիս պրկվում էին, և արյունը լցվում էր աչքերը: Տղան Մխեին չէր տեսնում, որովհետև նա նըստած էր հոր դիմաց, սակայն պատկերացնում էր նրա նեղ, հոգնած ուսերը, թե ինչպես նա կոշտուկոտ, երկար մատներով բռնել է բաժակը և թե ինչպես տըխուր են նրա աչքերը:
— Դե, վեր կաց,— ասաց Մգրը,— հիմա ոչ մի տղամարդ չի քնում:
— Բայց դու կասե՞ս, թե ինչ գործ ունեիր հանքախորշում,— հարցրեց հայրը:
— Բոլորը այնտեղ էին, ես չէի ուզում տանը մնալ,— ասաց տղան:
— Ոչինչ չեմ հասկանում:
— Պարսամ, դու չգիտես, թե ինչքան լավ է, որ նա այստեղ է,— ասաց Մգրը:
— Նրանից միայն օյիններ սպասիր:
— Ինչ ես ասում, Պարսամ, չգիտես, թե իմ տղաներին ինչքան եմ կարոտել:

Նրան տաք թեյ տվին:

— Այստեղ քեզ դո՞ւր է գալիս,— հարցրեց Միխեն:

— Ես տեսա, թե ինչպես դուք քանդում էիք ապառը:

— Լինում է ավելի վատը,— ասաց Միխեն:—Ապառը մեզ մոտ ամենակարծրն է:

Նրանք դեռ երկար նստած էին ցածր կախված լամպի շուրջը, համարյա դատարկ սեղանի մոտ, և փոքրիկ տնակը դեռ երկար ժամանակ լցված էր նրանց աղմուկով:

Քնեցին երկու ժամից էլ պակաս: Առաջինն արթնացավ Միխեն, ձեռքերով տրորեց աչքերը և բղավեց.

— Բրիգա՜դ, վե՛ր ել...

Նրանք շտապ-շտապ հագան անդրավարտիքները, ոտքերին քաշեցին երկարաճիտ կոշիկները և վազեցին սառը ծոծրակի տակ լվացվելու:

— Գնո՞ւմ եք,— հարցրեց տղան:

— Պետք է հերթափոխի հասնել,— ասաց հայրը:— Այստեղ քեզ համար երևի անսովոր շատ բան կա:

— Նրանք մի տեսակ կոպիտ են,— ասաց տղան:

— Ագտաղում ուրիշ մարդիկ չեն էլ մնում,— ասաց հայրը:— Ագտաղն իր համար ընտրում է հենց այդպիսի մարդկանց:

Տղան այժմ գիտեր. Ագտաղում չեն դադարում մրրիկները, Ագտաղում, դեպի հանքախորշերը գնալիս, մարդիկ մաքառում են քամու դեմ, հանքախորշերում նրանց վրա թափվում է պաղ ջուրը, և ապառը այստեղ ամենակարծրն է: Տղան մտածում էր. ինկապես, միայն Շմոն կարող էր փոթորկոտ գիշերներին մտնել հանքախորշը, պաղ ջրի տակ կանգնած փորել ամենակարծր ապառը և դրանից հետո պատմել Երանելի քաղաքի մասին հորինած իր հեքիաթը, դրանից հետո միայն Միխեն կարող էր այս աշխարհում փնտրել մի ամենամտերիմ մարդու և, գտնելով, քանդակել փայտե Բիբիին, և միայն նրանք կարող էին գիշերային փըլուզումից հետո դեռ երկար նստել փայտե սեղանի մոտ, ցածր կախված լամպի տակ, մի շիշ օղու շուրջը և աղմկել մինչև լույս...

— Ի՞նչ հետաքրքիր է այստեղ,— ասաց նա հորը:

...Առավոտները Ագտաղի վրա իջած են լինում թանձր մշուշները: Հայրը ասում է. դրանք հենց ամպերն են պատում Ագտաղի գագաթները և որ դա օրվա խաղաղ ժամերից մեկն է:

— Գնո՞ւմ եք,— հարցրեց Միխեն:

— Վաղը նրա մայրը գալիս է,— ասաց հայրը,— և կարելի է նրան տուն ուղարկել:

— Է՜,— ասաց Միխեն,— և ձեռքը պարզեց տղային:— Դե, ի՞նչ ասեմ, ծերուկ, արի մեզ մոտ, երբ ժամանակ կունենաս: Տղաները քեզ միշտ էլ կսպասեն:

Ագտաղում ավտոբուսը երկար չի կանգնում, մի քանի րոպե: Հայրն ու Միխեն կանգնած էին վարարած գետակի կամըրջի մոտ: Ավտոբուսը շրջադարձ կատարեց, ետևում մնացին փոքրիկ ավանի տնակները, խանութը, բանվորական ճաշարանը: Ետևում մնաց Ագտաղը: Տղան մտածում էր. օրերը Ագտաղում մռայլ ու խստաշունչ են, և՛ վաղը, և՛ ամեն օր Ագտաղի լեռների քարոտ լանջերին կզարնըվի անձրևը, և կդմհնդրածածկ տանիքների վրայով կսուրան հողմերը: Փոքրիկ տնակների փայտե դռնակներից, բանվորական ճաշարանից կելնեն մարդիկ ու մրրիկներին ընդառաջ կգնան լեռն ի վեր, դեպի հանքախորշերը: Իսկ հերթափոխից հետո նրանք նորից աղմուկով կգան անձրևի միջից, կլցվեն բանվորական ճաշարանի ծանոթ սրահը կամ Ագտաղի հյուրընկալ տնակները, սեղանների շուրջ կծխեն, կխմեն ու ախորժակով կըծամեն մի կտոր հացի վրա սեղմած պանիրն ու սոխը: Եվ տղան մտածում էր. լավ է, որ Ագտաղում անվերջանալի են ամպրոպները և, որ հողմերը այստեղ կարող են պոկել ու դեպի կիրճը շպրտել կղմինդրածածկ տանիքը:



**ՍՏԵՓԱՆ ՔԵՇԻՇՅԱՆ**

## Բարդի

Լուսաստղը ելավ լեռան ետևից
Ու հորիզոնը արծաթաջրեց,
Այն Լույս Հայացքը վայր իջավ երկնից,
Երկրի վրայից խավարը ցրեց:

Ահա լեռներն են շարված իմ դիմաց
Ու հարթավայրը՝ դաշտն Արարատի,
Զմրուխտ այգեստանն է դեմս փռված,
Ու մի քիչ հեռու՝ մի հսկա բարդի:

Ինձ է մոտենում, նայում հանդարտիկ
Դեմքը խորշոմած մի ծեր այգեպան,
«Որդի,— ասում է,—այս հզոր բարդին
Վկան է դարձել մի լուռ պատմության,

Հազար ինն հարյուր տասնըութ թվին
Կտրեց ճիշտ կեսից արկը թրքական,
Բայց ճյուղեր տվեց այն կտրած տեղից,
Ու ճյուղերն ամեն հսկա ծառ դարձան:

Իմ բունն ավրեցին ինչպես որ նրա՝
Ճյուղերով հսկա տունը Նաիրյան,
Նրան էլ կտրեց ոսոխը դաժան,
Բայց դեռ կանգնած է խրոխտ,
անսասան»:

Ու բարդին հանկարծ շնչով զեփյուռի
Ծեր այգեպանին արձագանք տվեց.
«Թեկուզ կտրեցին իմ բունը կեսից,
Բայց մի գլխի տեղ, տես, տասը ծլեց,

Քանզի ով ամուր կառչի մայր հողից,
Նա կսնուցվի անսպառ ուժով,
Թեկուզ և կտրեն գլուխն ուսերից՝
Կփոխարինվի տասը նոր գլխով:

**ՎԱԶԳԵՆ ՍՅՈՒՆԵՑՅԱՆ**

## Խոսք—խարանը

— Պապիկ, ինչո՞ւ են հաճախ կրկնում
Ու խորհուրդ տալիս մտերիմ մարդկանց՝
Զրույցի պահին՝ դրսում ու տանը,
Ասելով նրանց. «Ուր հաց՝ այնտեղ կաց»:

Հանցի համար են «հաց» ու «կաց» ասում,
Թե համոզված են այդպես բարբառում...
—Էհ, իմ աչքի լույս, այդ խոսք-խարանը
Ինձ էլ է զայրույթ ու ցավ պատճառում:

Այն վկայում է, որ դարեր ի վեր
Տառապել է մեր ժողովուրդը հեգ.
Վարել-ցանել է իր հողը արդար,
Բայց չի վայելել իր հացը երբեք:

Ու լքել է նաև երկիրը նախնյաց,
Հողը հայրենի, տունը հարազատ,
Մեկնել երկրներ, օտար ու հեռու,
Որ դատած հացը վայելի ազատ...

Ու մեր լեզվի մեջ՝ անեծքի հանգույն,
Դաջվել է խոսքն այդ որպես նշավակ—
Արդ դուք պետք է այն մատնեք մոռացման,
Կոչելով ցանցիր ազգին ի հավաք...

—Պապիկ, երևի այդ ասացվածքին
Պետք է հաղորդել նոր խորհուրդ կենաց.
Ու մենք պիտի ասենք արդեն մեկմեկու.
«Ուր էլ լինի հաց—Դու քո երկրում կաց»:

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Լեռը ձյան տակ, մենք՝ լեռան

Լեռը ձյան տակ, մենք՝ լեռան՝
Սպասում ենք ու ապրում,
Ծածկել է ձյունն իմաստուն
Կտուրները Հայոց տան:

Անհիշելի օրերից՝
Ասես անուշ մանանա՝
Այբուբենի տառերն են
Ձյան պես մաղում մեզ վրա:

Տառերն իջել են, ծաղկել՝
Դարձել մարդիկ, ծառ ու քար,
Հենց այդպես էլ մեր նախնիք
Տուն են շինել ու աշխարհ:

Ինչ-որ մեկը այստեղից
Եկել-անցել ու չկա,
Ճերմակ սավանն է պահում
Ոտնահետքերը նրա:

Ոտնահետքերն այդ բռնած՝
Երկար գնում ենք անքուն,
Լեռն է գալիս ընդառաջ,
Ու լեռնիվեր հետքն է նույն:

Ոտնահետքերը ձյունին
Պատմությունն են գրել մեր,
Ո՞վ է եկել ու անցել
Ու համբարձվել, ելել վեր:

Ելել, տառեր է մաղել
Հայոց հողին ձյունի պես՝
Ա—մեծատառն է դարձել
Մեծ Մասիսը լուռ ու վես:

Վերից տառեր է մաղել
Ձյան պես Հայոց աշխարհին՝
Փոքր Մասիս է դարձել
Փոքրատառ ա-ն վեհանիստ:

Լեռան վրա մագաղաթ
Պատվիրել է ճանաչել
Իմաստություն և խրատ,
Իմանալ խոսքն հանճարեղ,

Որ մենք հետքով իր անցնենք
Անդունդեզրերը կեռման,
Անցնենք աշխարհը այս հեգ՝
Լեռը ձյան տակ, մենք՝ լեռան:

# «ՁԵԶՊԵՏՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ...»

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Նիկոլ Դուման

Ծնվել է Ղարաբաղի Խաչենի Խշլաղ գյուղում: Իսկական անունը Նիկողայոս է, սակայն կարճ ասել են Նիկոլ: Հայրը քահանա էր: Սկզբնական կրթությունը ստացավ նրա մոտ, ապա ընդունվեց Շուշու թեմական դպրոցը, 1887 թ.՝ ավարտեց: Շուշու թեմականը այդ ժամանակ հինգդասյան էր և համարվել է հայկական ամենալավ դպրոցներից մեկը: Այնտեղ են աշխատել հայ մտավորականության այնպիսի ներկայացուցիչներ, ինչպիսիք են Խորեն Ստեփանեն, Ղազարոս Աղայանը, Սեդրակ Մանդինյանը, Առաքել Բահաթրյանը, Պետրոս Շանշյանը, Պետրոս Սիմոնյանը և շատ ուրիշներ: Նիկոլից առաջ այդ դպրոցը ավարտեցին Մուրացանը, Լեոն և ուրիշներ: Րաֆֆու «Խենթը» առաջին անգամ տպագրվել է Շուշու տպարանում: Նիկոլը դպրոցում աչքի է ընկել «իբրև ուշիմ, ընդունակ և ջանասեր աշակերտ»: Դպրոցը հաջողությամբ ավարտելուց հետո, նա մի քանի տարի աշխատում է Արցախի թեմի կոնսիստորիայում, ապա գնում է Հյուսիսային Կովկաս և ուսուցչություն է անում հայկական դպրոցներում:

1891 թ. նա Արդաբիլի վրայով գնում է Թավրիզ և ուսուցչություն է անում քաղաքի Հայկազյան-Թամարյան դպրոցում: Աշակերտներից մեկը նրա այդ ժամանակաշրջանի գործունեության մասին գրում է, որ նա դասերի հետ միասին աշակերտների համար խաղեր էր կազմակերպում և այդպես «մտերմանում էր աշակերտության հետ, իսկ դասարանում ամեն կերպ աշխատում էր իր սաներին դարձնել հարցասեր և բանիմաց»: Նա ուներ դպրոցական պատանիների մի խումբ, որոնց սովորեցնում էր «զենքի գործածության և նշանառության ձևերը»:

Թավրիզից Նիկոլը գնում է Լիլավա, որտեղ երկու տարի զբաղվում է ուսուցչությամբ, ապա գնում և հաստատվում է Սալմաստի Հավթվան, ապա շատ չանցած՝ 1893 թ. տեղափոխվում է Ղալասար գյուղը: Նիկոլը հիանալի որսորդ էր և Ղալասարում ազատ ժամերին սիրում էր որսի գնալ: Այդ գյուղից նա նամակագրական կապերի մեջ է մտնում Վանում գտնվող հայ ազգային ազատագրական շարժման գործիչների հետ:

Պարսկաստանի և Թուրքիայի սահմանագլխում էր գտնվում Դերեկա վանքը, որի շրջապատում կային Քաբիկ, Ասլանիկ, Աշնակ և Հախվերան հայկական գյուղերը, որտեղ ապրում էին 300 ընտանություն հայեր: Դերեկա վանքը այն կետն էր, որտեղ էին կենտրոնանում երկիր գնացող հայդուկները և այլ ուժեր:

1894 թ. ամռանը Թուրքիայի դրդմամբ քրդական ցեղերը նախապատրաստեցին մի հարձակում Դերեկի շրջապատում գտնվող հայկական գյուղերի վրա, նպատակ ունենալով քանդել վանքը, որպեսզի վերացնեն երկիր անցնողների հենման կետը: Իմանալով այդ մասին, Նիկոլը, սևքարեցի Սաքոն, Ջելլադը, Թավաքալյանը և ուրիշներ օգնության գնացին վանքի պաշտպաններին: Այդ կռվում իր քաջությամբ աչքի ընկավ Նիկոլը: Դա նրա առաջին ռազմական մկրտությունն էր: 1894 թ. Նիկոլը ցանկանում է անցնել Վան, սակայն չի հաջողվում: Ծանոթանում է Սալմաստի հայ վարժարանների տեսուչ Մ. Ավետիսյանի հետ: Համառ այդ երիտասարդը զգալով, որ թուրքական կոտորածների վտանգը կախվել է իր հայրենի Վան քաղաքի ժողովրդի վրա, 1895 թ. հոկտեմբերին մի խմբով ճանապարհ է ընկնում և հաջողությամբ հասնում Վան: Նիկոլը նախապատրաստում է 50 հոգանոց խումբ և ճանապարհ ընկնում դեպի երկիր: Զմռան սաստիկ ցուրտը և սառնամանիքը ծանր վիճակի առաջ են կանգնեցնում խմբի անդամներին: Չդիմանալով ցրտին, մահանում է արմենական



**ՆԻԿՈԼ ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**1866—1915**

հայտնի զինագործ Փանոսը, որը իր դարբնոցում արտասահմանյան տիպի հիանալի հրացաններ էր պատրաստում: Ճանապարհին Սարայի մոտ սկսվում է կռիվ թուրքական ուժերի հետ: Խումբը մութն ընկնելուց հետո, երբ արդեն մի քանի զոհեր էր տվել, շարունակում է ճանապարհը և հասնում Բողազ Քյասան ու տեղավորվում մարագներում: Հանկարծ քրդական ուժերը պաշարում են մարագը, որտեղ գտնվում էր նաև Նիկոլը: Նրանք խոտ են դնում մարագի դռանը և սկսում են այրել, նպատակ ունենալով ծխի միջոցով խեղդել հայդուկներին: Հանկարծ Նիկոլը դուրս է թռչում Մարագից և սրընթաց, մրրիկի պես սլանում է մոտակա սարը: Նրան սկսում են կոչել դուման (մրրիկ): Այս կռվում սպանվեցին քուրդ հայատյաց ցեղապետներ Ջնդին և Ծավեշը: Կռվից հետո հորինված մի երգում Ն ի կ ո լ ը անվանվում էր Դուման, Ղարա-Դուման կամ Նիկոլ Դուման անուններով: Նիկոլի այս քայլից հետո նրա խմբի անդամները դուրս են գալիս մարագից և սլանում են դեպի սարը, որտեղ Նիկոլն էր: Այնքանից հետո խումբը մի քանի զոհ տալով, մտնում է Վան: Ամբողջ ձմեռը Նիկոլ Դումանը մնում է Վանում և ապա մի զինատար խմբով բռնում է Սալմաստի ճանապարհը: Ճանապարհին Դերեկյա վանքի մոտ կռվի է բռնվում քրդական ուժերի հետ: Խումբը կռվով դուրս է գալիս վանքից և բարձրանում մոտակա Սպիտակ սարը: Այդ կռվում Նիկոլ Դումանը վիրավորվում է: Ապա նրանք շարունակում են ճանապարհը և հասնում են Քյոյնա-Ծահար, որտեղ պարսկական ուժերը ձերբակալում են խմբին: Նիկոլ Դումանը հրահանգել էր չկռվել պարսկական ուժերի դեմ: Դումանը կաշառքով ազատվում է բանտից, խմբի անդամները ևս մի քանի ամիս բանտում մնալուց հետո ազատվում են:

Հայտնի է, որ 1896 թ. սկսվեց Վանի բնակիչների հերոսական ինքնապաշտպանությունը, որի ավարտից հետո Մ. Ավետիսյանը մի քանի հարյուր հոգով թողեց Վանը և կռիվներով հասավ Բարդուղեմիոս Առաքյալի վանքի մոտ, որտեղ խմբի վրա հարձակվեցին թուրքական ու հատկապես քրդական ուժերը, և խումբը նահատակվեց: Իմանալով Պարսկաստան եկող այդ խմբի, ինչպես նաև Պետոյի (Ալեքսանդր Պետրոսյան) և Մարտիկ Սարուխանյանի խմբերի մասին, նրանց օգնելու նպատակով Նիկոլ Դումանը մի մեծ խմբով շարժվեց դեպի պարսկա-թուրքական սահմանը, սակայն սահմանի մոտ իմանալով, որ երեք խմբերն էլ՝ մեկը՝ Բարդուղեմիոս Առաքյալի վանքի մոտ, մյուսները՝ Չուխում և Գարահիսայում նահատակվել են, ետ է վերադառնում Սալմաստ:

1896 թ. Վանի հերոսական ինքնապաշտպանությունից շատ չանցած Վան է մտնում Նիկոլ Դումանի խումբը: Թուրքական իշխանությունները իմացան այդ մասին, և զորքերը պաշարեցին այն տունը, որտեղ գտնվում էր Դումանի խումբը: Սկսվում է կռիվը: Դումանին և նրա խմբին հաջողվում է ճեղքել պաշարման շղթան և գնալ Ծատախ:

Սալմաստից Նիկոլ Դումանը մեկնեց Թիֆլիս, որտեղ էլ որոշվեց կազմակերպել Խանասորի արշավանքը, որպես «փոխվրեժի» արշավանք ընդդեմ մազրիկ քրդական ցեղի: Այս, ըստ արշա-



7-րդ Հայկական գունդը անցնում է Տանկաց սահմանը:

վանքը կազմակերպողների, միաժամանակ քրդական ցեղերին սաստող արշավանք էր: Այդ արշավանքը նպատակ ուներ «առաջ բերել եվրոպական միջամըտություն հօգուտ հայկական հարցի»:

Այսպիսով, Խանասորի արշավանքը կազմակերպելու նախօրյակին, Սալմաստում սկսվեցին հավաքվել մեծ թվով հայդուկներ, որոնց մի մասը տարբեր կուսակցությունների էին պատկանում, իսկ մի մասն էլ առհասարակ կուսակցականներ չէին: Ժամանակակիցների հուշերից երևում է, որ սկսվեցին սուր վեճեր՝ պե՞տք է կազմակերպել այդ արշավանքը, թե՞ ոչ: Հավաքվածների մի մասը գտնում էր, որ, փոխանակ այդ արշավանքը կազմակերպելու, անհրաժեշտ է հավաքված այդ մի քանի հարյուր հոգուն ուղարկել երկրի ներսը, ուր նրանք աշխատանք կտանեն բնակիչների շըրջանում և նրանց կնախապատրաստեն ինքնապաշտպանության: Նիկոլը և նրա շրջապատում եղածները գտնում էին, որ պետք է անպայման հակահարված տալ քրդական մազրիկ ցեղին և նրա հայատյաց ցեղապետ Շարաֆ բեկին, որին պետք է հասկացնել, որ հայերը, եթե ցանկանան, կարող են նրա վրա հարձակվել և նրա արածների համար վրեժ լուծել: Հավաքվածների մեջ կային մարդիկ, որոնք առաջարկում էին ոչ միայն քրդերի վրա հարձակվել, այլև ջարդել սահմանապահ թուրքական զինվորական ուժերին: Երկար վիճաբանությունից հետո, որոշվում է հարձակվել մազրիկ ցեղի վրա: Արշավանքից առաջ հարձակվող խմբի հրամանատար նշանակվեց Վարդանը (Սարգիս Մեհրաբյան), իսկ Իշխանը նշանակվեց նրան օգնական (Հովսեփ Արղության): Նիկոլ Դումանը նշանակվեց հիսնապետ:

Խանասորի արշավանքը տեղի ունեցավ 1897 թ. հունիսի 25—27-ը: Մազրիկ ցեղի վրա հարձակվեցին 300 հոգով, որոնք ունեին 300 հրացան և 112 հազար փամփուշտ: Արշավանքին մասնակցող Գալուստ Ալոյանը հորինեց հայտնի «Կարկուտ տեղաց» երգը: Երգի մեջ պահպանված է հայդուկների հավատամքը կանանց և երեխաներին ձեռք չտալու մասին: Երբ քուրդ կինը, կրծքին սեղմած երեխային, ասում է. «յաման, աստված, ֆիդայն եկավ, ո՞ւր փախչեմ», ֆիդային պատասխանում է. «Մի վախենա, հանգիստ կեցիր, բաշի ջան, կնոջ երբեք ձեռք տալու չէ վրեժխնդիր հայ ֆիդան»: Եվ ամե-

նուր էլ այդպես էր. ժողովրդին երբեք չէին նեղացնում բռնակալության դեմ ոտքի ելած վրեժխնդիր մարտիկները, անկախ այն բանից, թե ինչ ազգի էին պատկանում նրանց դիմաց կանգնածները:

Խանասորի արշավանքից հետո թուրքական կառավարությունը դիմեց պարսկական կառավարությանը և պահանջեց ձերբակալել հայդուկներին: Սկսվեցին ձերբակալությունները, սակայն հայդուկների ճնշող մեծամասնությունը արդեն մաս-մաս անցել էր Անդրկովկաս: Նիկոլ Դումանը ծպտված անցավ Ուրմի, Մարաղա, Ղարադաղ և ապա Շուշի: Շատ չանցած նա գնաց Թիֆլիս, որտեղից էլ Բաքու: Նիկոլ Դումանի այդ ժամանակաշրջանի գործունեության մասին նրա հետ հանդիպողներից մեկը գրել է. «Կյանքը նրա համար մի վեգ էր, որի հետ խաղում էր: Դիրք, հարստություն, փառք՝ սին բաներ էր համարում»:

1904 թ., երբ Սասունի լեռնականները ստիպված անցան ինքնապաշտպանության, Սալմաստից Ն. Դումանը, բժիշկ Զավրիևը և Գիժ Թադոսը (Թադևոս Ամիրյան) կազմակերպեցին «Փոթորիկ» խումբը և նպատակադրվեցին անցնել Վան, ապա Սասուն և օգնել կռվողներին: Ճանապարհին խումբը հանդիպում է թուրքական զինված ուժերի: Սկսվում է կռիվը: Խումբը չնայած հիանալի էր կռվում, սակայն չի կարողանում Վան հասնել և կռվով ետ է վերադառնում: Այս խումբը կազմակերպվել էր Սալմաստի Ղալասար գյուղում, չնայած Նիկոլ Դումանը դեմ էր մանր-մունր կռիվներին և գտնում էր, որ այդպիսի կռիվների միջոցով հնարավոր չէ լուծել արևմտահայերի ազատագրության հարցը, որ հայդուկային կռիվների փոխարեն պետք է զինել ժողովրդին, նրան նախապատրաստել ինքնապաշտպանության և «միաժամանակ պրոպագանդ մղել տաճիկների, քրդերի, չերքեզների և մյուս հպատակ ազգությունների մեջ և առաջ բերել ընդհանուր ապստամբություն»:

Նիկոլ Դումանը տարիներ շարունակ ապրում է Ռուսաստանում և արտասահմանում, ապա վերադառնում է Պարսկաստան: Եվրոպայում գտնված ժամանակ նա մասնակցում է Շտուտգարդի միջազգային սոցիալիստական համագումարին և այնտեղ «արծարծում է մարտական-հեղափոխական խմբեր կազմելու խնդիրը: Ռուսիո սոցիալիստ հեղափոխական-ները ուղղակի հիանում են Դումանի մարտական խմբերի կազմակերպության ծրագրով և նույնը հարմարեցնում են ռուսական իրականությանը»:

1907 թ. Ժնևում հրատարակվեց Նիկոլ Դումանի **«Նախագիծ ժողովրդական ինքնապաշտպանության»** գրքույկը: Մինչ այդ նա հրատարակել էր «Գործնական և համառոտ հրահանգները» գրքույկը: Առաջին գրքույկում նա, քննելով 1905 թ. հայ-թաթարական կռիվները, որպես ականատես գտնում է, որ հայ-թաթարական ընդհարումները ոչ մի օգուտ չեն բերում ազգերին, ընդհակառակը, այդ անիմաստ կռիվներից երկու ազգերը «տուժում են ո՛չ միայն ֆիզիկապես ու տնտեսապես, այլև կուլտուրապես», և շահում է ցարիզմը:

Նիկոլ Դումանը անհանգիստ բնավորության տեր մարդ էր և ակտիվ մասնակիցն էր Պարսկաստանի հեղափոխական շարժման: 1911 թ. նա Կոստանդնուպոլսից անցնում է Տրապիզոն, Կարին, ապա այդ թվականի վերջին Սալմաստի վրայով՝ Վան: Վանի նահանգապետը կանչում է նրան և առաջարկում է թողնել Վանի սահմանները: Դումանը սկզբից հրաժարվեց հեռանալ Վանից, պատճառաբանելով, որ ապրում է մի սահմանադրական երկրում և միայն ուժով կարող են իրեն հեռացնել Վանից: Սակայն օրեր անցնելուց հետո, համոզվեց, որ պետք է թողնի Վանը: 1912—1914 թթ. նա կեղծ անցագրով ապրում էր արտասահմանում և Ռուսաստանում: Երբ սկսվեց առաջին իմպերիալիստական պատերազմը, նա գտնվում էր Թիֆլիսում: Զզվել էր ցարական ոստիկանության հետապնդումներից, երկար տարիների ծանր աշխատանքը նրան նետել էր անկողին. նա թոքախտավոր էր, այս հանգամանքը ստիպում է նրան գնալու ոստիկանատուն և հայտնելու իր ով լինելը: Անմիջապես բանտարկվում է և նետվում Մետեխի բանտը: Դրանից հետո, նույն 1914 թ. հիվանդանոցում երկու անգամ փորձեց վերջ տալ իր կյանքին, սակայն գնդակները միայն վիրավորեցին նրան: Բժիշկ Զավրիևը նրա ինքնասպանության այդ փորձերի մասին իր շրջապատի մարդկանց ասել է. «Էլ ի՞նչ կարող է անել Դումանը, երբ անկարող է նույնիսկ ինքն իրեն խփել»:

Շատ չանցած, հենց նույն 1914 թ. Նիկոլ Դումանը կնքեց իր մահկանացուն:




ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

# Պապի ուխտը

Պապն անկողնում էր: Քունը չէր տանում: Սիրտը ցավում էր, իսկ դրսում բուքըն էր ոռնում: Շուտով կլուսանա, ու վերջին թոռն էլ բանակ կգնա: Էլ կտեսնի՞ նրան...

Թոռը քնած էր: Լիալուսինը ամպերի տակից իր աղոտ լույսը գցել էր նրա լայն դեմքին:

Այգաբացը մոտ էր: Պապն այդ զգում էր ու շտապ վեր թռավ ջահելի նման: Պառավին ու հարսին չարթնացնելու համար նրանց մահճակալների մոտով անաղմուկ անցավ, բայց, ավաղ, նրանք արթուն էին:

Մտավ հարևան սենյակը:

Ու կռացած՝ կամաց ձայն տվեց.

— Վարդան:

Թոռն աչքերը բացեց ու զարմացած նայեց պապին.

— Ի՞նչ է, հորե:

Այդպես էր ասում պապին՝ ջահել հոր մահվանից հետո:

— Մի բան եմ ասելու, համա պիտի անես,— ու խոր շնչեց:

Թոռն առանց մտածելու, իսկույն ասաց.

— Կանեմ, հորե,— ու ժպտաց պապի նման:

Պապն ուրախացած համբուրեց թոռան մազերը.

— Էդ դեպքում, աչառս, վեր կաց, հագնվիր ու...

Եվ սուսուփուս դուրս եկան տնից: Լըսվեց իրենց աքաղաղի խռպոտ կանչը:

Ու ճամփա ընկան: Խորդուբորդ արահետն ընկած, ելան-իջան ահագին ձյան միջով: Թոռը ոչինչ չէր հասկանում, թե ո՞ւր են գնում, բայց հլու-հնազանդ հետևում էր պապին:

Լուսաբացի մթնշաղն էր փառավորվում երկնաքեր լեռնաշխարհում:

Իջնում էին կռացած ժայռերի մոտով դեպի Վայոց ձորը՝ Արփա գետի կիրճը:

Արդեն պարզ տեսանելի էր ամեն ինչ:

Անցան կամուրջը և թեքվեցին դեպի գետը:

Բացվում էր Վայոց ձորի զայրացկոտ առավոտը:

Պապն Արփա գետի ափին կանգ առավ: Ջնաշաղախ հրաշքը ժայռից դեպի վեր էր ձգված... Ու կարոտով նայեց բընության անձեռակերտ քանդակին: Դարերի հողմածեծ ժամանակն էր կերտել այդ մկանուտ դեմքը, ալեծածան մորուքը և դեպի հեռուներն ուղղված անմեկնելի ու խրոխտ հայացքը:





## ՀՈՎԱՆՈՑԸ

Ծիծեղույզ էր մաքրում Վիլլին,
Սահեց ոտքը նրա,
Գլորվելով ընկավ ներքև՝
Հովանոցիս վրա:
—Կորի՛ր աչքիցս, անպիտա՛ն,—
Ես բարկացա շատ խիստ:
Լավ է՝ փակ չէր հովանոցս,
Թե չէ կընկներ գլխիս:



Նկարը՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

## ԻՄ ԾԱՂԻԿ ԿՈՎԸ

Իմ ծաղիկ կովը,
Հեյ-հո, հեյ-հո-հո,
Իմ ծաղիկ կովը մի չալ հորթ ծնեց,
Հեյ-հո, հեյ-հո, հո՝ իմ երգն սկսվեց:

Իմ ծաղիկ կովը,
Հեյ-հո, հեյ-հո-հո,
Իմ ծաղիկ կովը հորթը կորցրեց,
Հեյ-հո, հեյ-հո-հո՝ իմ երգն ավարտվեց:









Վայոց ձոր, հայրենի կախարդ քանդակագործ... Տեղացիների սիրած վայրն է սա. առասպել դարձած Վարդան Մամիկոնյանի ժայռակերտ դիմաքանդակը:

Ծերունին պատկառանքով ծնկի իջավ: Նրան հետևեց թոռը:

Պապը վեր նայելով, աղոթքի նման մրմնջաց.

— Մեծ Վարդան, էլի մոտդ եմ եկել...

Թոռն այլևս չէր ժպտում. խոշոր աչքերը գամել էր ժայռ Վարդանին:

— Հիմա էլ թուրք Հիտլերն է թուրը ճոճում մեր դեմ: Հայը էս կռվում մենակ չէ,— ու թևքով սրբեց դեմքի ձյունը:

Ու ինքն էլ չիմացավ, թե ինչպես բարձր ասաց.

— Սա թոռս է, անունն էլ քո անունն եմ դրել:

Ժայռերն անգամ անհամբեր լռություն էին դարձել, թե էլ ի՞նչ է ասելու պապը:

— Գիտեմ, թոռս քո սուրբ անունը կռվում գետնով չի տա...—Պապը տնքաց:— Թող օրհնվի ուխտս քեզ մոտ, էլի Վարդանիս հետ քեզ այցի կգանք... Իմանաս, որ երրորդ թոռս եմ բանակ ճամփում:

Պապը թաքուն սրբում էր հոգին ամրապնդող արցունքները:

Ու ոտքի ելան: Անխոս համբուրեց թոռանը: Մեկ էլ նայեցին ժայռ Վարդանին ու ետ դարձան:

Վերադառնում էին թեթևացած սրտերով, իսկ հողմը գայլի բերանն ընկած կատաղի ոռնում էր:

Դաժան կարիքի մեջ գլորվում էին պատերազմի տարիները: Ճակատ ու թիկունք զսպանակի նման լարված էին: Պապը նստել չգիտեր. ով էր նստում որ...

Հոգսն ու թոռների ցավը բոլորովին կքել էին պապին: Երեքից էլ նամակ չէր գալիս.

Ընկավ անկողին: Շուտ-շուտ նայում էր դեպի դուռը...

Առավոտ էր, երկինքը՝ մռայլ: Մի հենակավոր զինվոր, ձախ ոտքը վեր բռնած, մտավ փոքրիկ բակն ու սկսեց արագ-արագ ցատկոտելով գնալ դեպի տունը:

Մայրն ու տատը վազեցին... Խելակորույս գրկեցին Վարդանին, իսկ նա, հարազատներից պոկված, ընկավ օդան... Զոքեց, գրկեց պապի ձյունամած գլուխը...

... Հանգչում էր, ուրախության արցունքները գլորվում էին նրա ամքած այտերի վրայով:

Վարդանը գրկել էր պապի սառչող մարմինն ու կիսաձայն կրկնում էր.

—Պապ, պապ... մոռացա՞ր ժայռ Վարդանին տված ուխտ գնալու սրբազան խոստումդ, պապ...



# ԶԱՐՄԱՆԱԼԻ ԵՐԿՎՈՐՅԱԿՆԵՐ

Նայելով Լիանա և Գեորգիանա երկվորյակ աղջնակների հրճվալից մութիկներին, չես ասի, որ 1982 թ. նրանց ծնունդը գրավել էր բժշկական շրջանների ողջ ուշադրությունը:

Սովորաբար երկվորյակների ծնունդը հրաշք չէ, քանի որ եղել են 3—4—5—6, և նույնիսկ տասը երկվորյակների ծնվելու 3 դեպք է արձանագրված ընթացիկ հարյուրամյակում (1924 թ. Իսպանիայում, 1934 թ. Չինաստանում և 1946-ին՝ Բրազիլիայում): Սակայն այս անգամ բանըն այն էր, որ ռումինացի քույրիկները ծնվել էին կրծքով ու փորով իրար կպած և 7 կգ ընդհանուր քաշով: Մի խոսքով՝ իսկական «Սիամի երկվորյակներ»:

Ինչպես հայտնի է Սիամի երկվորյակներ Չանգն ու Էնգը ծնվել են 1911 թ. նույնպես կրծքավանդակներով իրար կըպած: Իր տարօրինակ զավակներին հայրը վաճառեց կրկեսի տիրոջը, որի մոտ շահաբեր Սիամի երկվորյակներն ապրեցին 63 տարի և նույնիսկ ամուսնանալով երկու քույրերի հետ համատեղ ունեցան 22 սովորական նորմալ զավակներ:

Եղբայրներին իրարից բաժանելու վիրահատական փորձեր չեղան, քանի որ այն ժամանակ այդպիսի գործողությունը կլիներ ապարդյուն և անիմաստ: Նույնիսկ երբ եղբայրներից մեկը մահացավ, մյուսը մի քանի օր ապրեց՝ բնականաբար շղթայված դիակին, իսկ երբ փորձեցին նրան ազատել այդքան տհաճ բեռից, նա էլ մահացավ:

Բարեբախտաբար վիճակագրությունը ցույց է տալիս, որ Սիամի երկվորյակներ հանդիպում են 6 միլիոն ծնունդներից միայն մի եզակի դեպքում և, լինելով անկենսունակ, մեծ մասամբ մահանում են:

Նախկինում կատարել են մի շարք անհաջող փորձեր նման երկվորյակներին զատելու ուղղությամբ: Վերջին տարիներին այդպիսի երկու վիրահատական փորձեր պսակվել են հաջողությամբ, որն էլ հուսադրել է ռումինացի բժիշկ Գաբրիել Իոնեսկուին: Նա մանրակրկիտ քննելով նորածիններին, եկավ այն համոզման, որ թեկուզ քույրերի լյարդը ընդհանուր է, բայց մյուս ներքին օրգանները անջատ են, իսկ դա արդեն հույսի նշույլ էր, որ ներշնչում էր հաջող ելք:

Որոշվեց վիրահատությունն իրագործել Շվեյցարիայի Լոզան քաղաքի վիրաբուժական կլինիկաներից մեկում, որտեղ արդեն հաջողությամբ բաժանել էին ԱՄՆ-ից բերված երկվորյակներին:

Քույրերի վիրահատումը սկսվեց 1983 թ. փետրվարի 7-ին, առավոտյան ժամը 6-ին: Միայն նախապատրաստական աշխատանքները տևեցին չորս ժամ, իսկ ժամը 10-ին կատարվեց սերտաճած կրծքավանդակների անջատման առաջին կտրվածքը:

Վիրաբույժների վարպետության շնորհիվ նրանց ընդհանուր լյարդի բաժանման օպերացիան իրագործվեց առանց բարդությունների: Իրարից անջատված քույրերին հանձնեցին վիրաբույժների երկու տարբեր խմբերի, որոնք միաժամանակ սկսեցին աշխատել: Պարզելով, որ քույրերի սիրտ-անոթային համակարգերը կարող են ինքնուրույն աշխատել, նրանք շարունակեցին այդ ապշեցուցիչ վիրահատումը և ժամը 15-ին հաջողությամբ ավարտեցին այն: Ինը ժամ տևած վիրահատությանը մասնակցեց 18 վիրաբույժ:

Այդպիսով համաշխարհային վիրաբուժության ողջ պատմության ընթացքում հաջողությամբ իրագործվեց երրորդ հազվագյուտ վիրահատությունը, որի ժամանակ անջատեցին սերտաճ քույրերին:

Մենք էլ Լիանա և Գեորգինա նախկին Սիամի երկվորյակներին մաղթենք քաջառողջություն և երկար կյանք, ուրախանալով, որ մարդասիրական գիտությունը տարավ իր հերթական հաղթանակը:

ՎԱՐԴԱՆ ԽԱԶՈՅԱՆ

Կենսաբանական գիտ. թեկնածու




Այս գծագրի քառակուսիներում 2-ից մինչև 21-ը ներառյալ թվանշանները պետք է լրացնել այնպես, որ յուրաքանչյուր չորս քառակուսու գումարը հավասար լինի 46-ի: Թվանշանները քառակուսիներում չպետք է կրկնվեն:

**Կազմեց Հ. ԱԴԱՄՅԱՆԸ**
**Երևան, № 188 դպրոց, 7-րդ դասարան**




Ուս-ուսի հենված ընկերներ բազում
Երկու սյուների հենված են ամուր,
Վայրէջք-վերելքից անվերջ սպասում,
Քեզ ծառայում են միշտ և ամենուր:
(Սանդուղք)

Զուգում է հանդը և անտառը պերճ՝
Ծորը մաշելով երեք ամսվա մեջ,
Երբ քամին փչում, մրսում է, դողում,
Ձմեռնամուտին քնում է հողում,
(Աշուն)

Ման է գալիս արտում,
Ամբողջ արտը ուտում,
Ոչ հագնում, ոչ հոգնում,
Բոլորին է օգնում:
(Կոմբայն)

**ԻՍՐԱՅԵԼ ՉԱՆԳԼՅԱՆ**

# Մեր հայրենիք

Խոսք՝ ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ
Երաժշտ. մշակումը՝
ԲԱՐՍԵՂ ԿԱՆԱՉՅԱՆԻ

Մեր հայրենիք թշվառ, անտեր,
Մեր թշնամյաց ոտնակոխ,
Իր որդիքը արդ կանչում է,
Հանել յուր վրեժ, քեն ու ոխ:

Մեր հայրենիք շղթաներով,
Այսքան տարի կապկապած,
Յուր քաջ որդոց սուրբ արյունով
Պիտի լինի ազատված:

Ահա, եղբայր քեզ մի դրոշ,
Որ իմ ձեռքով գործեցի.
Գիշերները ես քուն չեղա,
Արտասուքով լվացի:

Նայիր նրան երեք գույնով՝
Նվիրական մեր նշան,
Թող փողփողի թշնամու դեմ,
Թող միշտ պանծա Հայաստան:

Ամենայն տեղ մահը մի է,
Մարդ մի անգամ պիտ մեռնի,
Բայց երանի՝ որ յուր ազգի
Ազատության կզոհվի:




Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):
Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Լ.:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806